# ՁՄԵՌ ՏԱՏԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Ձմեռ պապը խաղալիքները դարսեց սահնակի վրա, բաց արեց խրճիթի դուռը և կանչեց.

— Ձմե՛ռ տատի, շո՛ւտ արա, ուշանում ենք։

— Մի քիչ սպասի՛ր, հիմա կվերջացնեմ,— ներսից ձայն տվեց Ձմեռ տատը։

Բայց որտեղի՞ց վերջացնի։ Ճիշտ է, փախլավան պատրաստ է, բայց գաթան դեռ կրակի վրա է. պիտի հետևել, որ չվառվի։ Կարկանդակը դեռ հում է։ Մեղրաբլիթի մի մասն անհամ է, նորից պետք է պատրաստել։ Ընկույզով ու նուշով թխված տեսակ-տեսակ խմորեղենը դեռ տաք է. իրար վրա դարսել չի լինի, կփչանա։ Գործ շատ կա։ Բայց ամեն անգամ, երբ Ձմեռ պապը ձայն է տալիս, Ձմեռ տատը պատասխանում է.

— Մի քիչ սպասի՛ր, հիմա կվերջացնեմ։

Ձմեռ պապը ծխամորճը վառեց. ծխեց ու համբերեց, համբերեց ու ծխեց, բան դուրս չեկավ։ Վերջը համբերությունը հատավ. մտավ խոհանոց և ի՞նչ տեսավ. չորս կողմը փախլավա, գաթա, մեղրաբլիթ, կարկանդակ, տեսակ-տեսակ, որը հում, որը եփած, որը տաք, որը սառը, որը դարսած, որը ցրված։ Երկու ժամվա գործ կա, երկու ժամից ավելի, բայց ոչ պակաս։ Եվ Ձմեռ պապն ասաց.

— Ձմե՛ռ տատի, ես գնամ, դու հետո կամաց-կամաց իմ հետևից կհասնես։

— Լա՛վ, գնա՛, ես կհասնե՛մ, դու մի՛ մտածիր։

Ձմեռ պապը նստեց սահնակ և քշեց անտառի միջով, շատ արագ քշեց, որպեսզի չուշանա և խաղալիքները տանի բաժանի բոլոր երեխաներին։ Իսկ Ձմեռ տատը խոհանոցում եփում-թափում էր։ Վերջապես, Ձը-

ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12 1960 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ





ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

մեռ պապիկի գնալուց երեք ժամ հիսունչորս րոպե հետո, Ձմեռ տատը երկու լիքը զամբյուղներով դուրս եկավ խրճիթից: Սահնակ չկա, ի՞նչ անի: Եվ տատն ինքն իրեն ասաց.

— Կամաց-կամաց ոտով կգնամ: Գուցե հանդիպեմ անտառապահին և նրա սահնակով ճամփաս շարունակեմ:

Նա չգիտեր, որ անտառապահը իր տանը քեֆ է անում:

Ձմեռ տատը ճանապարհ ընկավ, մեկ էլ ծառի հետևից դուրս եկավ աղվեսը և ասաց.

— Բարև՛, ձմե՛ռ տատի, շնորհավո՛ր քո նոր տարին:

— Քո՛նն էլ, քո՛նն էլ, աղվե՛ս, մո՛տ եկ, մի քիչ փախլավա կեր:

Աղվեսը հազիվ կշտացել էր, երբ ծառի վրայից սկյուռը ցած թռավ և ասաց.

Շնորհավոր քո նոր տարին, բարի Ձմեռ տատի:

Ձմեռ տատը պատասխանեց.

Ապրե՛ս, շատ ապրես, խերո՛ք սկյուռիկ, արի գաթա կեր:

Սկյուռը հազիվ էր կշտացել, որ թփի տակից դուրս եկավ նապաստակը և ասաց.

— Ձմե՛ռ տատի, Ձմեռ տատի, քո նոր տարին շնորհավոր:

— Քո նոր տարին էլ շնորհավոր, շլե՛կ ջան: Վերցրու, կարկանդակ վերցրու:

Նապաստակը հազիվ էր կշտացել, որ երևաց արջ քեռին: Նոր տարին տոնելու համար արթնացել էր քնից: Նրան էլ տատիկը մեղրաբլիթ տվեց: Միայն գայլն էր, որ չմոտեցավ Ձմեռ տատիկին: Մինչև Ձմեռ տատը հասավ անտառի ծայրը, զամբյուղները դատարկվեցին: Էլ ինչպե՞ս գնար երեխաների մոտ առանց կարկանդակի ու մեղրաբլիթի, առանց փախլավայի ու գաթայի:

Եվ Ձմեռ տատը վերադարձավ իր խրճիթը:

Ամեն տարի համարյա թե այսպես է լինում: Դրա համար էլ նոր տարուն Ձմեռ պապիկը գալիս է, իսկ Ձմեռ տատը չկա ու չկա: Ձեր մայրիկներն ու տատիկներն էլ լավ գիտեն Ձմեռ տատիկի դանդաղկոտ ու բարի բնավորությունը: Ահա թե ինչու նախորոք գաթա, փախլավա, մեղրաբլիթ, կարկանդակ են թխում և իրենց հույսը չեն դնում Ձմեռ տատիկի վրա:



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

ԳԱՐԻԿ ԲԱՂԴՈՒՐՅԱՆ

Ջվող հավքերի երամն է լռին
Ամպոտ երկնքի օվկիանով լողում,
Ցամաք առվի մոտ մերկացած ուռին
Քամու պաղ շնչից մրսում է, դողում:

Ճնճղուկը ճյուղին ծվարել է խեղճ,
Այնպես դժվա՜ր է անընկեր մնալ,
Լուռ կուչ է եկել Ջալոն բնի մեջ,
Չի ուզում անգամ ճաշին մոտենալ:

Հագել է իր նոր վերարկուն Կիման,
Դպրոց է գնում ժպիտը շրթին.
Ամպերում սուզված արևը հիմա
Նրան թվում է մի ծնագնդի:

Ինչպես սիրելի ու ժիր դռնապան,
Ջոր տերևները ավլում է քամին.
Ասես կարոտով մաքրում է ճամփան
Հեռվից հյուր եկող իր բարեկամի:

Ու թվում է, թե ուր-որ է ահա,
Կանաչ, զարդարված եղևնին ծեռքին,
Ձմեռ պապիկը պիտի երևա
Եվ բարի՜-բարի ժպտա ամենքին:

# ԷՔՍԿԱՎԱՏՈՐԸ

ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Գարուն է:

Արևը կախ է ընկել կապույտ երկնքից, աչքերը թարթում ու ծիծաղում է: Այնպես է ծիծաղում, այնպես է ծիծաղում, որ ամենուր ողողել է պայծառ լույսով և ջերմ ուրախությամբ:

Ա՜խ, որքան լավ է այդ արևը, որքա՜ն բարի, մայրիկի պես անուշ ժպիտ ունի: Դրա համար էլ Արևիկը շատ է սիրում արևին: Տխրում, խռովում է, երբ արևը մայր է մտնում կամ ծածկվում ամպերի տակ: Լաց է լինում և շարունակ կրկնում.

— Արևին եմ ուզում, արևին եմ ուզում…

Իսկ այսօր շատ լավ օր է. ոչ մառախուղ կա լեռներում, և ոչ էլ ամպ երկնքում: Ամբողջ օրը արև կանի: Բայց ո՞ւր է Արսենը, ինչո՞ւ չեկավ:

Գուցե այդ ծույլիկը դեռ քնա՞ծ է: Նա ուզեց գնալ տատիկին այդ մասին ասելու, երբ հանկարծ փողոցի ծայրից ինչ-որ աղմուկ ու դղրդոց լսվեց:

Արևիկը բակից դուրս թռավ ու մնաց զարմացած: Իրենց փողոցով, շրջապատված մեծ ու փոքր երեխաներով, զանգի պես սև, հսկա մարմնով ու ծուռ, երկար վզով մի բան էր գալիս: Նա սկզբից վախեցավ, ուզեց յաց լինել: Բայց ի՞նչ է տեսնում. Արսենը, որ իր կարծիքով քնած պիտի լիներ, բոլորից առաջ ընկած գալիս է: Նրա հետ են՝ Գոհարը, Աշխենը, Սերոբը, Վարդը, բոլորը, բոլորը:

Արևիկը ուզեց վազ տալ միանալ ընկերներին, բայց ետ դարձավ և կանգնեց դռանը: Նա նեղացել էր ընկերներից, որ գնացել են խաղալու և իրեն ոչինչ չեն ասել:

Երկաթե հսկան եկավ, եկավ ու կանգնեց ուղիղ Արևիկենց տան դիմաց: Լռեց աղմուկը, և հողը դադարեց դողդողալ Արևիկի ոտքերի տակ: Փոքրիկ աղջիկը մեկ սրան էր նայում, մեկ նրան, ուզում էր իմանալ ի՞նչ բան է այդ երկաթե հրսկան և ինչի՞ համար է եկել իրենց դուռը: Սակայն ոչ ոք նրա վրա ուշադրություն չէր դարձնում, ամեն մեկն ինքն էր ուզում իմանալ էքսկավատորի մասին:



Արևիկին ամենից շատ հետաքրքրում և զարմացնում էր երկաթե հսկայի ուղտի նման ծուռ վիզը, որը բարձր էր իրենց գյուղի բոլոր տներից։

Բացվեց մեքենայի խցիկի դուռը, և Արևիկի համար անսպասելի երևաց մի քեռու ուրախ դեմք։

Արևիկը արևից կկոցած աչքերով նայեց նրան ու ժպտաց։

Երեխան խիստ դուր եկավ վարորդին։

— Ծի՛կ...

Աղջիկն ուրախացավ։

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց մեքենայի մեջ նստած մարդը։

— Արևիկ,— աղջկա փոխարեն պատասխանեցին երեխաներից մի քանիսը միասին։

Մեքենան թողած՝ երեխաները այս անգամ շրջապատեցին Արևիկին. նա դարձավ ուշադրության կենտրոն։

— Արևիկ, սա ձեր տո՞ւնն է,— հարցրեց քեռին։

Աղջիկը գլխով դրական նշան արավ։

— Արևիկ, դու լավ աղջիկ ես, գնա մի բաժակ ջուր բեր քեռին խմի։

Արևիկի հետ միաժամանակ դեպի տուն վազեցին մի քանի երեխա։ Թոռան ձեռքից բռնած տանից դուրս եկավ մի կին և վարորդին ներս հրավիրեց։

— Արի, որդիս, արի գնանք տուն. դու, երևի մեր դռան առաջն ես կանգնել, ուրեմն մեր հյուրն ես։ Գնանք, կհանգստանաս, ջուր կխմես, հաց կուտես, հետո կգնաս։

— Ես տեղ չունեմ գնալու, պետք է ձեր գյուղում աշխատեմ։

— Ջրանցք փորելու համա՞ր ես եկել,— ուրախացավ կինը։

— Այո՛, ջրանցք փորելու, ջուր բերենք, որ այս չարաճճիները լողանան,— ասաց նա ձեռքով ցույց տալով երեխաներին։

— Դու արդեն հյուր չես, այլ մեր աշխատողը, գնանք, գնանք,— պնդեց կինը։

Մեքենավարը ուզեց հրաժարվել, բայց տան-

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

տիրանուց ազատվել չկարողացավ։

— Լավ, մայրիկ,— ասաց մեքենայի ջահել վարորդը և ցած թռավ։ Նա գրկեց Արևիկին և համբուրեց կնոջը։

Էքսկավատորի վարորդ Արամ Բարոյանը հանգստանում էր, երբ ներս ընկավ չարաճճի աչքերով մի տղա և հևալով ասաց.

— Քեռի, գալիս են...

— Թող գան, ի՞նչ անենք,— միջամտեց կինը։

— Չէ, մայրիկ, շնորհակալություն,— ասաց Բարոյանը և նստած տեղից վեր կացավ,— խոսեցինք՝ հանգստացանք, գնամ, որ աշխատանքը սկսենք։

Երեխաների մի ամբողջ բանակ սպասում էր նրան բակում։

— Ա՜խ, դուք չարաճճիներ, դեռ չե՞ք գնացել,— ասաց նա։ Արևիկը քեռու գրկից հպարտ նայում էր երեխաներին ու բարի հայացքով ժպտում։

Փոշի բարձրացնելով, էքսկավատորի մոտ կանգ առան ավտոմեքենաները։ Բարոյանը բարձրացավ մեքենայի վրա։

Մեքենան դանդաղ առաջ շարժվեց, նրա թրթուրավոր անիվների տակ դղրդում էր հողը։ Ուժ գործադրելով, էքսկավատորը թեքվեց դեպի ձախ, բավական գնաց և կանգ առավ այնտեղ, որտեղից պետք է սկսվեր փորելու աշխատանքը։

Օդում դողդողացող ատամնավոր շերեփը դանդաղ ու հանդիսավոր ցած իջավ։ Ներկաները ավելի խմբվեցին մեքենայի շուրջը։

Էքսկավատորի վարորդը մի քանի անգամ շերեփի ատամներով չանկռտեց հողը, սակայն շերեփը հողի մեջ չէր մտնում։

— Բան դուրս չի գալիս, իզուր տեղն էլ էսքան մարդ են հավաքել,— ասաց մեկը։

— Ընկեր Փիլոս, էքսկավատորի շերեփի ատամները բթացել են, հողի մեջ չեն մտնում,— ասաց վարորդը։

Փիլոսը, որ փորձված մարդ էր և նախօրոք պատրաստվել էր դրան, ձեռքը դրեց աչքի վրա և գլուխը թեքեց դեպի մոտակա ծառը։ Այնտեղից հսկայի կերպարանքով մեկը դեպի էքսկավատորը վազեց մի սպիտակ գեր խոյ ուսի վրա։ Տեսարանը անսպասելի էր ու հետաքրքիր։ Մինչև հավաքվածները կսթափվեին, ֆերմայի վարիչ Բարսեղը էքսկավատորի շերեփի մոտ ոչխարի գլուխը կտրեց և վեր բարձրացրեց։

Վարորդի խցիկի դուռը փակվեց։

— Քաղաքից է եկել,— ասաց մի կոլտնտեսական, բայց գյուղի սովորությունները գիտի։ Նա դիտմամբ չէր փորում։

— Հիմա կտեսնենք,— ասաց նույն թերահավատը։

Ուժեղացավ մոտորի հռնդյունը, շերեփի ատամները մի քանի անգամ թեթև փորեցին ամուր գետինը, ապա ամբողջ շերեփը խոր թաղվեց հողի մեջ և լիքը լցված վեր բարձրացավ։ Շերեփի ատամներից կախ էին ընկել արմատներ, ինչ-որ հնոտիքի մնացորդներ, թիթեղի մի բարակ շերտ և էլի ինչ-որ բաներ։

Բոլորը ծիծաղեցին։

Ի ուրախություն մանուկների, Բարոյանը նորից լի շերեփը բավական ժամանակ պահեց օդի մեջ։

Երեխաները շարունակ ծափահարում էին, գլխարկները վեր նետում։ Մի չարաճճի տղայի գլխարկ, որ բոլորի գլխարկներից վեր էր բարձրացել, ընկավ շերեփի վրա. բազմապատկվեց երեխաների ուրախությունը։

Էքսկավատորը դանդաղ մի կողմ թեքեց իր երկաթյա վիզը, շերեփը ցած իջեցրեց՝ գետնի վրա ահագին հող դիզելով։

— Այ քեզ բան,— բացականչեց մեկը հիացած,— մի տուն հող միանգամից է վերցնում։

— Բա ի՞նչ էիր կարծում, որ էդքան հող միանգամից չվերցներ, էստեղ կբերեի՞ն...

— Մի տան չափն ինչ է որ,— ասաց մեկ ուրիշը,— ասեք մի սարի չափ, պրծավ գնաց։

Ջրանցքի աշխատանքը շուտով հունի մեջ մտավ, կորցրեց առաջին հետաքրքրությունը և հասակավորները կամաց-կամաց հեռացան։ Երեխաներն ու երիտասարդներն էին, որ դեռ խմբված դիտում էին էքսկավատորի աշխատանքը։ Նրանց ամենից շատ զբաղեցնում էր այն միտքը, թե փոքրիկ մեքենան ինչպե՞ս պիտի հողից հաներ ճանապարհին ընկած ծառի հսկա կոճղը, որը ով գիտի, որ տարվանից էր մնացել։

## ԱՇՈՒՆ

ՍԱՐԳԻՍ

Թռչուններն են վաղուց չվել,
Հրաժեշտ են երգով տվել
Ու թռել հեռուն.
Տերևներն են թափվում վերջին,
Հիմա բույնն է կանչում արջին
Մթին անտառում։

Պաղ եղյամն է ճամփան ներկում,
Ձմռան երգն է քամին երգում,
Սուրում լեռն ի վեր.
Թռա՜ք, սիրուն հավքեր, թռա՜ք,
Էլ չեն վառում հանդում կրակ
Հովիվները մեր։

— Սա Դասպար պապի բարդին է, ի՞նչ ծառ էր, – ասրով խփելով կոճղին, ասաց ֆերմայի վարիչը, – ծարավից չորացավ։
— Ջուրը որ եկավ, մեկի տեղը տասը կտնկենք։
Արևը թեքվել էր դեպի մայրամուտ։ Նրա վերջին շողերի տակ ասես ավելի էր մեծացել երկաթե նավակը։
Լեռներից փչում էր մեղմ զովը։ Երեկոյան լռության և զովության մեջ ավելի պարզ ու որոշակի էր լսվում մեքենայի ռիթմիկ աշխատանքը։ Ահա ևս մի քանի շերեփ և ներթը կհասնի վաղուց այնտեղ ցցված բաթուկին։
Մինչդեռ երեխաներն ու ջահելները վիճում էին, էքսկավատորի շերեփը դեմ առավ կոճղին։ Դժվար

# ԵՐԳԸ



ԽԱՐԱՋՅԱՆ

Այնպես մեղմիկ ու հոգեթով,
Դեռ չպատմած մի հեքիաթով
Անտառն է խշշում.
Թվում է, թե անցած գարնան՝
Բույրով լեցուն, տաք ու վառման
Օրերն է հիշում:

Ձորակներով մեր դեղնալանջ
Կարոտի պես մի մեղմականչ
Գետակն է վազում.
Փոքրիկ տղա, ցուրտ է, մշուշ.
Հիմա գարնան երգերն անուշ
Լսիր երազում:







էր երևի միանգամից դուրս հանել հսկա կոճղը։ Վարորդը մի քանի անգամ շերեփը ետ ու առաջ տարավ և այն ուղղորդեց այնպես, որ չվնասեր, և սկսեց հանելու աշխատանքը։ Աղմկում էր մեքենան, ասես ուժ էր հավաքում և ավելի խորն էր թաղվում հողի մեջ։ Վարորդը ինչ-որ լծակներ շարժեց։ Կոճղի շուրջը հողը ճաքճքեց։ Մոտիկ կանգնածների աչքերի առաջ հողը շարժվում էր և այն պահին, երբ բոլորը շունչները պահած սպասում էին, շերեփը դանդաղ վեր բարձրացավ, հսկա կոճղը տանելով իր հետ։
— Վա՜յ, — գոչեցին բոլորը զարմացած։
Այդ ժամանակ խցիկի դուռը բացվեց և երեխաներին ձեռքով ողջունեց Արամ Բարոյանը։ Բոլորը ուրախ ծափահարեցին։
Հերթափոխի ժամանակն էր։

# ԱՆՀԵՏԱՑԱԾ ՏԱՌԵՐԸ



ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

Երկրաբանական արշավախմբի ղեկավար Գուրգենը նստեց ծովափի լերկ քարերին, խոշոր ձեռքերով հարդարեց մազերն ու մտացրիվ հայացքը հառեց ջրերին։ Հետո ձեռքը գրպանը տանելով, հանեց ոտորված ծրարը, բաց արեց աշակերտական տետրի թղթից չորս տակ ծալված մի թերթ ու խորասուզված սկսեց նայել ձեռագրին։
— Հը՞, նրա կողքին թեք ընկած ընկերն ուղղվելով նայեց Գուրգենին, — նամա՞կ ես ստացել տանից...
— Այո, տանից։
— Բայց ինչ-որ տխուր ես երևում։
Գուրգենն իջավ քարերի վրայից, պառկեց նրա կողքին և ավազների վրա փռեց նամակը։
— Նայեցեք, այստեղ գաղտնիք չկա։ Ընդհակառակը սա մի նամակ է, որ պետք է ցուցադրել։
Նրանք երկար ժամանակ նայում էին տառերին, տառերի ձև չունեցող խզբզանքներին։
— Դրել է որդիս՝ Արթուրը. հինգերորդ դասարանում է սովորում. ահա թե ինչպիսի ձեռագիր ունի. առավոտից մի տասն անգամ փորձել եմ, բայց կարդալ, գլուխ հանել չեմ կարողանում։ Ա՛յ, նայիր, այս վերջին մի քանի տողը բոլորովին չի հասկացվում։
«Մայրիկը» մի բառի վրա մատը դնելով՝ կարդաց երկրաբանի ընկերը։
— Այո, բայց ի՞նչ է պատահել նրան՝ կնոջս։
Նրանք մի պահ նորից միասին դիտեցին նամակը, հետո Գուրգենը հուզված վերցրեց այն ու դրեց գրպանը։
— Տեսնում ես, բարեկամ, մի՞թե օտար տեղ գտնվող հորն այսպիսի նամակ կուղարկեն. չգիտեմ, ինչ-որ լավ բան չեմ կռահում... Իհարկե, անմիջապես հեռագրել եմ։
Երկրաբանը նստեց ու վառեց ծխամորճը.
— Ինչպիսի՜ անփութություն, ինչպիսի՜ ձեռագիր, — շարունակեց նա։
Նրա շագանակագույն աչքերն ասես սառել էին խիտ հոնքերի տակ։ Ծխախոտի ծուխն ալիքներ կազմելով հասնում էր դեպի ծովը։ Փչում էր մեղմ

հովը, դալար խոտաբույսերն օրորվում էին, դեպի ափ էին շտապում ալիքներն ու փշրվում ափերին։

Ալիքների նման դեպի տուն էին թռչում երկրաբանի մտքերը. ի՞նչ է պատահել կնոջը։ Երկու շաբաթ է արդեն, որ նա տանից լուր չունի, և ահա հայտնվել է այս նամակը։

Նա բացեց գրպանի թղթերը, հանեց մի լուսանկար. այնտեղից ժպտում էին կինն ու որդին։ Մի պահ որդուն պատկերացրեց մեծացած, երկրաբանի համազգեստով, ինչպես երազում էր Արթուրը, և խկույն մռայլվեց։ Իսկ եթե որդին մի շատ կարևոր հայտնագործություն կատարի և այդ մասին գրի իր անփույթ ձեռագրո՞վ։

Նա լուսանկարը դրեց գրպանը, թիկնոցով ծածկեց գիշերային հերթապահությունից հոգնած, կողքին քնած ընկերոջն ու նորից լցրեց ծխամորճը։

* * *

Այն օրը, երբ մայրն աշխատանքից տուն եկավ ու պառկեց, Արթուրը բոլորովին կորցրեց իրեն։ Երկու օրում տունն այնպես խառնվեց, որ երբ բժշկուհին ներս մտավ, նայեց հիվանդի շորերին, անխնամ այս ու այն կողմ թափված իրերին, գլուխը տարուբերեց։ Նստարանները ծածկված էին սրբիչներով, ծագուստներով, սեղանի և հատակի վրա այս ու այն կողմ թափված էին գրքեր, խաղալիքներ, լրագրեր ու ամսագրեր...

Առաջին անգամ Աշխենն զգաց, որ Արթուրն արդեն մեծ տղա էր. իսկ ինքը շարունակում էր նրան փայփայել փոքրիկ երեխայի նման, հեռու բոլոր տեսակի տնային գործերից։ Արթուրի բնավորության մեջ ամրապնդվում էր թափթփվածությունը և շտապողականությունը։ Այո, ամեն ինչում նա շտապում էր։

Դասարանում դասը կարդալիս, երբեմն ուսուցիչը նախօրոք զգուշացնում էր, որ դանդաղ կարդա, բայց նա էլի մի շնչով հասնում էր վերջին տողին։ Ուսուցիչն ստիպված պահանջում էր, որ երկրորդ անգամ կարդա։ Ուտելիս այնպես էր ըշտապում, որ մի քանի անգամ վազում էր ջուր խմելու, մեծ պատառները կոկորդից ներս տանելու համար։

Հայոց լեզվի շարադրությունների տակ գրեթե միշտ ուսուցչուհին կարմիր թանաքով գրում էր՝ անընթեռնելի է, նորից արտագրիր։

Արթուրը հինգ-վեց տառից բաղկացած բառը գրում էր երեք-չորս տառով, որոնք ոչ թե տառեր էին, այլ հիերոգլիֆներ։ Երբեմն նա ինքն էլ իր գրածը կարդալ չէր կարողանում։ Եվ հաճախ տետրը ցույց էր տալիս Սուսաննային, որի հետ չորս տարի կողք-կողքի էին նստում։ Միայն նա էր կարողանում կարդալ Արթուրի գրածները։

Դեհ, էլ ի՞նչ ասենք, քայլելիս միշտ կպչում էր արանիրան, կամ շրջապատի առարկաններին և երբեմն ցավեցնում ոտքերը։

Դրանք դուր չէին գալիս թե՛ մորը, և թե՛ ուսուցիչներին. նրանք սովորեցնում էին Արթուրին, որ այդպես չի կարելի, նույնիսկ հայոց լեզվի դասատուն նրա տետրի վրա, հենց շապիկին գրել էր. «Հիշիր, Արթուր, շտապողի ոտքը միշտ քարին է կպչում»։

Բայց Արթուրը դրանք շուտ էր մոռանում և շարունակում էր շտապել։

Եվ ահա այն օրը, երբ մայրը հիվանդացավ պառկեց, նա նորից շտապեց, վերցրեց թուղթը, մի քանի տող խզբզեց, ծրարի մեջ դրեց և ուղարկեց։ Արթուրը ցանկանում էր մորն ուրախացնել, հայրը կկարդար նամակը և խկույն կգար...

Ա՛յ թե կուրախանար մայրիկը, հապա ի՛նքը, ինչպե՜ս էր կարոտել հայրիկին։



* * *

Աշխենն ամուսնու հեռագիրն ստացավ ու մնաց զարմացած, իսկ ինչո՞ւ է անհանգստացել, ինքը չի գրել հիվանդության մասին, ի՞նչ էր նշանակում այդ։ Արթուրը, որ երբեք սուտ չէր խոսում, ասաց.

— Մայրիկ, ես հայրիկին նամակ եմ գրել, այո, գրել եմ, որ դու հիվանդացել ես. գրել եմ, որ շուտ գա։

— Մի՞թե, կարելի՞ էր անհանգստացնել հայրիկին, չէ՞ որ նա հիմա մեզանից շատ հեռու է գտնվում։ Է՜, դարձյալ շտապել ես...

Հաջորդ օրը Աշխենը նամակ ստացավ ամուսնուց։ Ծրարի մեջ, բացի իր նամակից, երկրաբանը դրել էր նաև Արթուրի ուղարկած նամակը...

Այո, հենց վաղը ես կանցնեմ դպրոց և կըխնդրեմ ձեր դիրեկտորին, քո ուսուցիչներին, որ քեզ նորից առաջին դասարան տանեն, դու անգրագետ ես, քեզ պետք է նորից տառաճանաչություն սովորեցնել։ Նայիր, մի՞թե սրանք տառեր են, հայերեն տառեր... Այսպես կարող է խզբզել միայն երեք-չորս տարեկան երեխան,— ասում էր մայրը։



* * *

Այդ գիշեր Արթուրը շատ անհանգիստ քնեց, աչքի առջևից չէր հեռանում իր նամակը, առաջին նամակը, որի հետ այնքան հույս և ուրախություն էր կապել...

Սենյակը թաղվել էր կաթնավուն լույսի մեջ, ժամացույցի միալար թիկ-թակը քուն բերեց Արթուրի անհանգիստ աչքերին, հոգնած կոպերը փակվեցին։

...Դասարան։ Ահա հայոց լեզվի դասաժամն...

— Սիմոնյան Արթուր, կարդա՛ դասը։

Արթուրը բաց է անում դասագիրքը, բայց, ա՜յ քեզ զարմանք, գրքի մեջ ոչ մի տառ չկա, թերթերը մաքու՜ր-մաքուր են, միայն երևում են նկարները և էջեր ցույց տվող թվանշանները, ամբողջ գիրքը դատարկ է...

Արթուրն ուզում է խնդրել Սուսանի գիրքը, իսկ նա չի տալիս։

— Ես ուզում եմ նայել, դու գիրք ունես, ինչո՞ւ ես իմը վերցնում։

Արթուրն ասում է, որ տառեր չկան, ուզում է ցույց տալ դասագիրքը, բայց ամբողջ դասարանը ծիծաղում է։

Ուսուցչուհին «2» է նշանակում։

Տխրում է Արթուրը, քիչ է մնում ճչա, ինչո՞ւ չեն հավատում իրեն...

Հետո Արթուրն ուզում է գրել։ Բաց է անում տետրը, գրիչը թաթախում է թանաքամանի մեջ, մոտեցնում թղթին, բայց չի կարողանում գրել, ոչ մի տառ չի հիշում...

Եվ նա լաց է լինում։

— Քեզ պետք է առաջին դասարան տանել,— լսվում է դպրոցի դիրեկտորի ձայնը։

Արթուրը մի պահ իրեն պատկերացնում է այն փոքրիկների խմբում։ Ինչ ծիծաղելի է, ահագին հասակն առած պիտի նստի առաջին դասարանցիների կողքին...

Ահա այդ ժամանակ նրան է մոտենում մի պատկառելի ծերունի, գեղեցիկ, կարճ կտրած մորուքով, խոր ընկած խելացի աչքերով, ձեռքը կրծքին դրած...

Արթուրը չի վախենում. այնքա՜ն բարի, այնպե՜ս քնքուշ է ծերունու հայացքը։ Նա մոտենում է Արթուրին, և նրանց հայացքները հանդիպում են իրար։ Այո, ծանոթ դեմք է. Արթուրը ինչ-որ տեղ տեսել է նրան, բայց չի հիշում որտեղ, ո՞վ գիտի, գուցե որևէ կինոյում... Ծերունին բարևում է Արթուրին և նստում կողքին։

— Դու ինձ չե՞ս ճանաչում,— մի փոքր լուռ

նայելուց հետո, հարցնում է նա։
— Ո՛չ, պապի։
— Հիշիր, որևէ տեղ չե՞ս տեսել իմ նկարը։
— Նկա՞րը, հա՛, հիշեցի, տեսել եմ, Մուսանի մեծ եղբոր հայ գրականության դասագրքում։
— Ապրե՛ս։ Էլ ի՞նչ ես հիշում։
— Էլ ոչինչ, անունդ չեմ հիշում, միայն քո նկարի մոտ տառեր կային, այո, այբուբենը։
— Ապրես,—ծերունին լռեց, հետո նայեց Արթուրի թաց աչքերին ու ասաց.
Լա՞ց ես եղել։
Արթուրը չպատասխանեց։
— Գիտեմ, քո պայուսակից անհետացել են տառերը։
— Այո, և ինձ ուզում են նորից առաջին դասարան տանել,—տխուր պատասխանեց Արթուրը։
— Այդ ես եմ քո պայուսակից հանել բոլոր տառերը,—ասաց ծերունին ու թափ տվեց թևի տակ պահած կաշվե սև կազմով հաստ գիրքը։ Այնտեղից թափվեցին սև թանաքով գրված տառեր, դրանք ծուռումուռ էին, թեք ընկած, կարծես մուրճով ծեծել, ջարդուփշուր էին արել։

Արթուրը նայեց, նայեց ու ճանաչեց. այո, դրանք իր գրած տառերն էին, միայն ծերունին առանձին-առանձին մեծացրել էր։ Ինչքա՜ն տգեղ էին, ի՜նչ ծևի տառեր էին, ասես նոր էր տեսնում Արթուրը։

Արթուրը լուռ շարունակում էր նայել տառերին։ Ծերունին նույնպես ձայն չէր հանում, մեկ նայում էր Արթուրին, մեկ՝ գետնին թափված տառերին։ Հետո նա բացեց իր գիրքը և թափ տվեց, էլի տառեր թափվեցին, բայց սրանք գրված էին կարմիր թանաքով, համաչափ ու գեղեցիկ։

—։ Ահա՛, հիմա նայիր, նայիր ու համեմատիր. սևով գրված տառերը քոնն են, իսկ մյուսները՝ իմը։ Արդյո՞ք դրանք նույն տառերն են։

Ծերունին վերցրեց երկու տառ ու դրեց կողք-կողքի։ Ապա նայեց Արթուրին ու ասաց.
— Դե հավաքի՛ր քո տառերը։
Արթուրն ուրախացած հավաքեց։
— Լցրո՛ւ ջրի մեջ, լցրո՛ւ, թող ջուրը տանի, դրանք ոչ ոքի պետք չեն։
Արթուրը տառերը լցրեց ոտքերի մոտով հոսող առվակի մեջ։
— Պապի՛, ուրեմն՝ հիմա ես պիտի գնամ առաջին դասարա՞ն,—տխուր հարցրեց նա։
— Ո՛չ։ Դու տառերը ճանաչում ես, բայց աղավաղում ես նրանց ձևը, դու պետք է սիրես հայերեն տառերը և գրես, ա՛յ, սրանց նման։ Հավաքի՛ր սրանք։

Արթուրը հավաքում էր գեղեցիկ տառերն ու մտածում. իսկ ո՞վ է այս հետաքրքիր ծերունին։
— Ե՞ս,—նրա միտքը կռահելով հարցրեց ծերունին։
Այո պապի, ուզում եմ իմանալ։
— Ես Մեսրոպ Մաշտոցն եմ, հայկական տառերի հեղինակը։ Ինչքա՜ն անքուն գիշերներ եմ լուսացրել յուրաքանչյուր տառի համար, ու հիմա սիրտս ցավում է, երբ քեզ նման աշակերտներ...— նա այլևս չշարունակեց, ձեռքը թափ տվեց ու հեռացավ։

Արթուրն ուզում էր վազել նրա հետևից, բայց լսեց մոր ձայնը.
— Արթո՜ւր, Արթո՜ւր, վե՛ր կաց, դասից ուշացար։

Արթուրը բացեց աչքերը և առանց հագնվելու վազեց, վերցրեց պայուսակը։ Ինչ լա՜վ էր, բոլոր տառերն այնտեղ էին։ Երբ նա ստուգում էր տետրերը, թեթև կարմրեց և արագ ծածկեց, կարծես ծերունին կանգնած էր իր կողքին...





# Նոր տարվա նախօրյակին

ՄԱՂԱԹԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ցերեկն ինչքան երկարի,
Հո չի՞ դառնա մի տարի.
Բայց մի ամբողջ ցերեկ կա
Մինչև Ձմեռ պապը գա:
Ժամացույցն էլ թարսի պես
Կանգնել է կարծես:
Այսօր ինչպե՞ս սպասի,
Սաթիկն հիմա ի՞նչ անի.
Օրը ինչպե՞ս է անում,
Նստել ու միտք է անում,
Քունն էլ տանում է, տանում...
Եթե հայրիկը շուտ գար,
Հետը մի քիչ կխաղար.
Բայց նա մինչև իրիկուն
Գործարանից չի գա տուն:
Իսկ մայրիկը չի խաղում,
Էլի ալյուր է մաղում,
Էլի կրակ է անում,
Ամանները լվանում:
Գործ շատ ունի մայրիկը,
Միայն պարապ է ինքը.
Մայրիկը գործ է անում,
Միայն ինքն է ձանձրանում:
Իսկ ի՞նչ, եթե վեր կենա
Ու մայրիկի մոտ գնա.
Ոչ թե ուղի տակ ընկնի,
Այլ նրա հետ գործ անի.
Սրբիչն առնի ու արագ
Սրբի ափսե ու բաժակ:
Մայրիկն էլ գոհ կլինի,
Հայրիկն էլ գոհ կլինի,
Կհամբուրեն աղջկան.
Ձմեռ պապն էլ շուտ կգա:



Աշխարհում շատ մեծ բնակավայրեր կան, քաղաքներ կան՝ հարյուր հազարավոր բնակչությամբ, որոնք չեն վայելում այն գյուղի փառքը, որ կոչվում է Յասնայա Պոլյանա: Ավելի քան հարյուր տարի է, ինչ աշխարհի բոլոր ծայրերում հոլովվում է այդ գյուղի անունը: Կար ժամանակ, որ միլիոնավոր մարդիկ իրենց հայացքն ուղղել էին դեպի կենտրոնական Ռուսաստանի այդ փոքրիկ բնակավայրը՝ արդարության ու ճշմարտության խոսք սպասելով այնտեղից: Եվ այդ խոսքը հնչում էր և Տոլստոյի բերանից, դուրս գալիս նրա գրչի տակից, տարածվում հեռո՜ւ, հեռո՜ւ... Մարդիկ հափշտակում էին այդ խոսքը, ինչպես հաց ու ջուրն են հափշտակում քաղցած, ծարավ մարդիկ: Այդ խոսքը սերունդների համար ավելի թանկ է եղել հացից ու ջրից, եղել է նրանց հենարանը կյանքում, հույս ու ապաստարան է եղել նրանց համար:

«Տոլստոյը ռուսական մեծ հոգին է... լուսատու, որ հարյուր տարի առաջ ծագեց երկրի վրա և լուսավորեց իմ սերնդի երիտասարդությունը: Մեռնող հարյուրամյակի հեղձուկ աղջամուղջում նա մեզ համար ուղեցույց աստղ եղավ»: Այս խոսքերը Տոլստոյի մասին ասել է ֆրանսիացի գրող Ռոմեն Ռոլանը, որն ասես ամբողջ աշխարհի իր սերնդակիցների անունից է խոսում, որովհետև Տոլստոյի մասին այսպես է ասում ամեն մի ժողովուրդ: Տոլստոյը կարծես մի կախարդ էր, որ կարողանում էր թափանցել մարդկանց հոգու խորքը, ցույց տալ այդ հոգին՝ գեղարվեստական չտեսնված ուժով: Նրա ստեղծած կերպարները այնքան վառ են ու կենդանի, որ մի անգամ կարդալով ընդմիշտ մնում են ընթերցողի հիշողության մեջ: Իսկ նրա ստեղծած կերպարները շատ են, մի քանի հազարի են հասնում: Դրանք Ռուսաստանի բոլոր շերտավորումներից պատկանող մարդիկ են՝ գյուղացիներ ու բանվորներ, ծառայողներ ու բարձր աստիճանավորներ, զորավարներ ու թագավորներ:

Ծնվելով Յասնայա Պոլյանայի իրենց ագարակում, Տոլստոյն հետագայում գրեթե իր ամբողջ կյանքն անցկացրեց այնտեղ, ամեն բան անելով, որ գյուղացիները կրթվեն, ուսում ստանան: Յասնայա Պոլյանայում նա դպրոց բաց արեց, որտեղ դասավանդում էր նաև ինքը, մեծ գրողը: Գյուղացի երեխաները շատ էին սիրում Լև Նիկոլաևիչին, անհամբեր սպասում նրա դասերին: Իր մանկությունն անցկացնելով գյուղացի երեխաների հետ, Տոլստոյը լավ էր հասկանում նրանց բնավորությունը և աշխատում էր այնպես անել, որպեսզի բոլոր առարկաներն էլ հետաքրքրեն երեխաներին: Նա ցանկանում էր, որ բոլո՛րը, բոլորը երջանիկ լինեն կյանքում: Դեռ հինգ-վեց տարեկան հասակում նա իր եղբայրների ու քույրերի հետ մի խաղ էր խաղում, որը կոչվում էր «Կանաչ ճողիկ»: «Կանաչ ճողիկի» վրա, նրա մեծ եղբոր Նիկոլայի ասելով մի «գաղտնիք» կար գրված: Այդ «գաղտնիքն» իմացողը կարող էր այնպես անել, որպեսզի մարդիկ չկռվեն իրար հետ ու երջանիկ ապրեն: Բայց «Կանաչ ճողիկը» թաղված էր ձորակի պռնկին, անտառում և դեռ հարկավոր էր գտնել: Ու Լև Տոլստոյն ամբողջ կյանքում իր ստեղծագործություններով կարծես որոնում էր «Կանաչ ճողիկը»՝ մարդկությանը խաղաղություն և երջանկություն նվիրելու համար:

Դպրոցում Տոլստոյը երեխաների համար փոքրիկ պատմվածքներ ու հեքիաթներ էր հնարում ու պատմում: Հետագայում նա շատ պատմվածքներ գրեց երեխաների համար, որոնք հիմա էլ մեծ հետաքրքրությամբ են կարդացվում:

Տոլստոյն իրեն շատ հասարակ էր պահում: Նա երեխաների հետ խաղում, լողանում ու սահնակ էր քշում ո՛չ միայն մանուկ հասակում, այլև այն ժամանակ, երբ հասակ էր առել և նշանավոր մարդ էր:

Մինչև խոր ծերություն, մինչև կյանքի վերջին օրերը Լև Նիկոլաևիչն աշխատում էր: Նրա աշխատասիրությանը չափ ու սահման չկար, չափ ու սահման չկար նրա խստապահանջությանը: Նա իր պատմվածքներն ու վիպակները, նույնիսկ այնպիսի խոշոր վեպեր, ինչպիսիք են «Պատերազմն ու խաղաղությունը», «Աննա Կարենինան» արտագրում էր մի քանի անգամ: Դրա հետ միասին նա կատարում էր նաև դաշտային աշխատանքներ — վարում ու ցանում էր, մշակում էր հողը, մասնակցում բերքահավաքին և ո՛չ մի գյուղացի նրանից լավ չէր կատարում այդ աշխատանքները: Լինելով հարուստ, ապահոված մարդ, նա հասարակ էր ապրում և չէր սիրում ճոխություն ու շքեղություն, ատում էր այն մարդկանց, որոնք առանց աշխատելու ցոփ կյանք էին վարում, որոնք նստած էին աշխատավոր մարդու վզին: Լև Տոլստոյն իր գրչով ծաղրում էր այդպիսի մարդկանց և ցարական Ռուսաստանի անարգ կարգերը: Թեև ռևոլյուցիոներ չէր, սակայն նա շատ բան արեց ռևոլյուցիայի համար, մեծ արվեստագետի ուժով մերկացնելով ցարիզմի հիմքերը: Դրա համար էլ Լենինը նրան Ռուսական Ռևոլյուցիայի հայելին էր համարում:

# Լեվ



# ՏՈԼՍՏՈՅ

Լև Տոլստոյը ստեղծագործեց մոտ վաթսուն տարի և մեծ ժառանգություն թողեց մարդկությանը։ Նրա գործերը 90 հատոր են կազմում, որոնցից մեծ մասը հրատարակվել է աշխարհի բոլոր կուլտուրական լեզուներով։

1910 թվականի նոյեմբերի 20-ը ցնցեց ամբողջ աշխարհը։ Մահացել էր հանճարեղ գրողն ու մեծ մարդը։ Մարդիկ շտապում էին Յասնայա Պոլյանա։ Ովքեր կարող էին գնացքով ու կառքով, իսկ ովքեր չէին կարող, ոտքով էին գնում։ Իր ցանկությամբ Տոլստոյին թաղեցին անտառում, ձորակի պռնկին, այնտեղ, որտեղ պետք է թաղված լիներ մարդկությանը երջանկություն տվող «Կանաչ ճողիկը»։ Նրա վրա շքեղ գերեզմանաքար չկա։ Ցածրիկ հողաթումբը, որ ծածկված է ծաղիկներով ու խոտով, մշտապես շրջապատված է բարձր ծառերով։ Նրանք ասես իրենց շրշյունով պատմում են Լև Նիկոլաևիչին այն մասին, թե Ռուսաստանում վաղո՜ւց արդեն լույս աշխարհ է հանված նրա տարիների երազը՝ «Կանաչ ճողիկը»։

Նոյեմբերին ամբողջ աշխարհը նշեց հանճարեղ գրողի մահվան հիսնամյակը։

ԼԵՎ ՏՈԼՍՏՈՅ

# ԹՌԻՉՔ



Մի նավ, աշխարհի շուրջը պտտվելուց հետո, վերադառնում էր հայրենիք։ Հանդարտ եղանակ էր. բոլոր ճամփորդները տախտակամածի վրա էին։ Սրանց մեջ անցնում-դառնում էր մի խոշոր կապիկ և զվարճացնում ամենքին։ Նա կուչ ու ձուլ էր գալիս, ցատկոտում, ծիծաղելի ծամածռություններ էր անում, ծաղրում էր մարդկանց և, երևում էր, ինքը հասկանում է, որ իրենով զվարճանում են, ու դրանից ավելի էր աշխուժանում։

Նա ցատկոտելով մոտեցավ տասներկու տարեկան մի տղայի՝ նավապետի որդուն, վերցրեց նրա գլխարկը, դրեց իր գլխին և արագորեն բարձրացավ կայմի վրա։ Ամենքը ծիծաղեցին, իսկ փոքրիկ տղան, առանց գլխարկի մնալով, չգիտեր ծիծաղի, թե բարկանա։

Վեր բարձրանալով կապիկը նստեց կայմի առաջին ատրճանի վրա և սկսեց ատամներով ու թաթերով պատառոտել տղայի գլխարկը։ Նա կարծես ծաղրում էր տղային, ցույց էր տալիս նրան ու ծամածռում դեմքը։ Տղան ձեռով սպառնաց նրան և գոռաց նրա վրա, բայց կապիկն ավելի կատաղությամբ սկսեց պատառոտել գլխարկը։

Այդ տեսնելով՝ նավաստիներն սկսեցին ավելի բարձրաձայն ծիծաղել, իսկ տղան կարմրեց, հանեց բաճկոնն ու կապիկի հետևից բարձրացավ կայմը։ Մի րոպեում նա պարանով բարձրացավ կայմի առաջին ատրճանը. բայց կապիկն ավելի արագությամբ ու ճարպկորեն վեր բարձրացավ հենց այն րոպեին, երբ տղան կարծում էր, թե արդեն կխլի գլխարկը։

— Մեկ է, ձեռիցս չես պրծնի,— գոռաց տղան և բարձրացավ վեր։

Կապիկը նորից խաբս տվեց նրան, պարանով եղավ ավելի վեր. բայց տղայի հերսը բռնել էր արդեն, և նա ետ չմնաց կապիկից։

Ու այսպես. կապիկն ու տղան մի րոպեում հասան կայմի ամենավերին ծայրը։ Ամենաբարձր կետում կապիկը ձգվեց ամբողջ մարմնով, ետին թաթերով բռնեց պարանից, տղայի գլխարկը կախեց վերջին ատրճանի ծայրից, իսկ ինքը բարձրացավ կայմի կատարը ու այնտեղից, ծամածռություններ անելով, ցույց տվեց ատամները՝ մեծ հրճվանքի մեջ։ Կայմից մինչև ատրճանի ծայրը, ուր կախված էր տղայի գլխարկը, երկու արշին կլիներ, այնպես որ գլխարկը վերցնելու համար, պետք էր ձեռքից բաց թողնել պարանն ու կայմը։

Բայց տղան շատ էր զայրացած, հուզված։ Նա կայմը թողեց և ոտը դրեց ատրճանի վրա։ Տախտակամածից ամենքը նայում էին ու ծիծաղում կապիկի ու տղայի արածների վրա, բայց հենց որ տեսան՝ տղան պարանը թողեց և ոտը դրեց ատրճանի վրա, ձեռները թափահարելով, նրանք սարսափից ձայները կտրեցին ու քարացան։

Բավական էր տղան ոտը սխալ դներ, կընկներ տախտակամածի վրա և ջարդուփշուր կլիներ։ Եթե անգամ այդ էլ չլիներ, և նա գնար մինչև ատրճանի ծայրը ու վերցներ գլխարկը, այնուհետև դժվար կլիներ ետ դառնալ և հասնել մինչև կայմը։

Բոլորն անխոս նայում էին նրան և սպասում, թե ինչ է լինելու։

Հանկարծ ճանապարհորդների բազմության մեջ մեկը հառաչեց սարսափից։ Տղան այդ ձայնից սթափվեց, ներքև նայեց ու երերաց։

Այդ ժամանակ նավապետը՝ տղայի հայրը, դուրս եկավ իր կայուտից (նավասենյակ)։ Նրա ձեռին հրացան կար, որով նպատակ ուներ ճայեր որսալ։ Որդուն կայմի վրա տեսնելով՝ նա անմիջապես նշան բռնեց նրան և գոռաց. «Ջուրն ըն-

կեր. իսկույն թոփը՝ ջուրն ընկեր, թե չէ կխփեմ»։ Տղան երերաց, բայց չհասկացավ հոր խոսքը։ «Թոփ, թե չէ կխփեմ... Մե՛կ, երկո՛ւ...»— և հենց որ հայրը գոռաց «երե՛ք»՝ տղան գլուխ թափահարեց ու թռավ ներքև։

Կարծես թնդանոթի մի արկ՝ տղայի մարմինը շրմփաց ծովում, և ալիքները դեռ չէին ծածկել նրան, երբ քսան կորովի նավաստիներ նավից նետվեցին ծով։ Քառասուն վայրկյանից հետո,—որոնք շատ երկար թվացին բոլորին,—դուրս եկավ տղայի մարմինը։ Նրան բռնեցին և բերին նավ բարձրացրին։ Մի քանի րոպեից հետո նրա բերանից և քթից ջուր հոսեց, և նա սկսեց շնչել։

Երբ կապիտանն այդ տեսավ՝ նա հանկարծ գոռաց, կարծես ինչ-որ բան խեղդում էր նրան, և վազեց մտավ իր կայուտը, որ ոչ-որ չտեսնի իր լացը։



Նկ. ԱՐԻԱ ԲՈՅԱՋՅԱՆԻ

# ԽՆՁՈՐԵՆԻ

Ես անկեցի երկու հարյուր խնձորենի և երեք տարի, գարնանն ու աշնանը, փորում էի նրանց տակը և ձմեռը փաթաթում էի ծղոտով՝ նապաստակներից պաշտպանելու։ Չորրորդ տարին, երբ ձյունը վեր կացավ, գնացի խնձորենիներիս տեսնելու։ Ձմեռը նրանք հաստացել էին. նրանց կեղևը դարձել էր փայլուն ու հյութալի. բոլոր ճյուղերը ողջ էին, և ամեն մի ճյուղի ծայրի ու ոստի վրա կային ոսպի պես կլորիկ ծաղկի բողբոջներ։ Տեղ-տեղ արդեն մի քանիսը դրանցից պայթել և երևում էին ծաղկի թերթերի կարմիր եզրերը։ Ես գիտեի, որ բոլոր կոկոնները դառնալու են ծաղիկներ ու պտուղներ, և ուրախացա, նայելով խնձորենիներիս։ Բայց երբ առաջին իսկ խնձորենու բնին կապած ծղոտը վերցրի, տեսա, որ ներքև, ուղիղ գետնի մոտ խնձորենու կեղևը կրծված է շուրջ բոլորը, ինչպես սպիտակ մատանի։ Այդ մկներն էին արել։ Բաց արի մյուս խնձորենու բունը—դրա վրա էլ նույնն էր։ Երկու հարյուր խնձորենուց մեկը ողջ չէր մնացել։ Կրծված տեղերը ես կուպր ու մոմ քսեցի, բայց երբ խնձորենիները ծաղկեցին, նրանց այդ ծաղիկները իսկույն էլ թափվեցին։ Հետո փոքրիկ տերևներ դուրս եկան, դրանք էլ թառամեցին ու չորացան։ Կեղևը կուչ եկավ ու չորացավ։ Երկու հարյուր խնձորենուց մնացին միայն ինը։ Այդ ինը խնձորենու բունը շուրջ բոլորը կրծված չէր, սպիտակ օղակում մնացել էին կեղևի շերտեր։ Այդ շերտերի վրա, որտեղ միանում էր կեղևը, ուռուցքներ առաջ եկան, և խնձորենիները թեև ճերմակեցին, բայց ապրեցին, աճեցին։ Մնացած բոլորը փչացան, միայն կրծված տեղերից ներքև ընձյուղներ արձակեցին, այն էլ ամբողջովին վայրի։

Կեղևը ծառերի համար նույնն է, ինչ որ ջղերը մարդու համար։ Մարդու արյունն անցնում է ջղերի միջով, իսկ կեղևի միջով անցնում է ծառին սնող հյութը և բարձրանում է նրա ճյուղերի, տերևների ու ծաղիկների մեջ։ Կարելի է ծառի ամբողջ ներսը փորել դուրս հանել, ինչպես այդ պատահում է խաղողի պառավ վազերին, միայն թե կեղևը ողջ մնա՝ ծառը կապրի. բայց եթե կեղևը փչացավ՝ ծառը կորած է։ Եթե մարդու ջղերը կտրեն՝ նա կմեռնի, նախ՝ որ արյունը դուրս կհոսի, երկրորդ, որ արյունն արդեն ճանապարհներ չի ունենա մարմնով շրջան կատարելու։

Այդպես էլ խնձորենիները փչացան այն պատճառով, որ մկները նրանց կեղևը կերել էին շուրջ բոլորը, և հյութն այլես ճանապարհ չուներ արմատներից ճյուղերը, տերևները գնալու և ծաղիկներին հասնելու։

Թարգմ. ՍՏ. ԶՈՐՅԱՆ

# ԱՖՐԻԿԱՅԻ




*Ահա երկու քարտեզ: Առաջինը գրեթե ամբողջովին ծածկված է մեկ գույնով: Դա գաղութ-Աֆրիկան է: 1950 թվականին միայն երկու տեղում են հաղթել ազատասեր մարտիկները:*

*Անցել է ընդամենը 10 տարի, և ահա թե ինչպես է փոխվել նույն քարտեզը: Կեսից ավելին ազատագրված է գաղութային ճնշումից:*

Աֆրիկա...

Առանց քարտեզին նայելու, աչքերիդ առջև արդեն պատկերանում է կանաչ, կարմրավուն, դեղին և այլ գույներով ներկված այդ հսկայական աշխարհամասը: Հիշո՞ւմ ես, քարտեզի վրա նույն գույներն ունեն նաև Անգլիան, Ֆրանսիան, Իսպանիան, Պորտուգալիան, Բելգիան, Իտալիան: Ինչո՞ւ:

Աֆրիկան իր տարածությամբ համարյա երեք անգամ մեծ է Եվրոպայից, բայց եվրոպական այդ վեց պետությունները բաժան-բաժան են արել անծայրածիր մայրցամաքը և դարձրել իրենց գաղութը: Ահա՛ թե ինչու:

Այդպես էր Աֆրիկան մինչև վերջերս: Բայց այդպես չէ նա այսօր: Ճնշված ժողովուրդները ջարդուփշուր են անում գաղութարարների դրած կապանքները և դարավոր խավարից քայլում են դեպի լույս, դեպի ազատություն:

Օրեցօր փոխվում է Աֆրիկայի քարտեզը, փոխվում են և գույները: Նախկին գաղութները դառնում են ազատ, անկախ երկրներ՝ իրենց սեփական գույնով ու սեփական դրոշակով:




*1 ՄԱՌ (Եգիպտական շրջան) 2. Լիբիա, 3. Թունիս, 4. Մարոկկո, 5. Մալի Ֆեդերացիա, 6. Վերին Վոլտայի Ռեսպուբլիկա, 7. Նիգերի Ռեսպուբլիկա, 8. Չադի Ռեսպուբլիկա, 9. Սուդան, 10. Եթովպիա, 11. Սոմալիի Ռեսպուբլիկա, 12. Կենտրոնական Աֆրիկայի Ռեսպուբլիկա, 13. Կամերուն, 14. Նիգերիա, 15. Դագոմեական Ռեսպուբլիկա, 16. Տոգոյի Ռեսպուբլիկա, 17. Գանայի Ռեսպուբլիկա, 18. Փղոսկրե Ափի Ռեսպուբլիկա, 19. Գվինեական Ռեսպուբլիկա, 20. Լիբերիա, 21. Գաբոն, 22. Կոնգո՝ 23 Կոնգոյի Ռեսպուբլիկա, 24. Մալգաշական Ռեսպուբլիկա, 25. Էրիտրեա, 26 Մավրիտանիա:*

## ԳԱՂՈՒԹ ԱՇԽԱՐՀԱՄԱՍԸ

1482 թվականին պորտուգալական նավերը խարիսխ գցեցին Աֆրիկայի ափերի մոտ: Եվրոպացիները վաղուց էին աչք դրել Գանայի հարուստ ու ընդարձակ հողերին: Եվ ահա ծովափնյա այդ գեղատեսիլ վայրում իրենց տիրապետությունը հաստատեցին պորտուգալացիները: Նախկին ազատ ու անկախ կայսրությունը դարձավ գաղութ, Եվրոպական առաջին գաղութը Աֆրիկայում: Շուտով այստեղ շտապեցին հոլանդացիները: Բայց սրանց էլ երկար չվիճակվեց վայելել Գանայի հարստությունները, որովհետև Անգլիան ավելի զորեղ պետություն էր: Գանան դարձավ անգլիական գաղութ: Ու երկար տարիներ այդ երկիրը թալանելու իրավունքը պատկանում էր անգլիացի առևտրականներին ու կապիտալիստներին: Գաղութարարները

# ՏԱՐԻՆ

փոխեցին նաև երկրի անունը և դրեցին Ոսկե Ափ, մի փոքր մասն էլ կոչեցին Ստրուկների Ափ: Ոսկե Ափ կոչվեց, որովհետև մինչև Ավստրալիայի և Կալիֆորնիայի ոսկեբեր ավազների հայտնաբերումը, Գանան էր Եվրոպայի ոսկու շտեմարանը: Իսկ այն վայրը, որին տվեցին Ստրուկների Ափ անունը, կապված է ստրկավաճառության հետ: Այստեղ որսում էին անօգնական նեգրերին, փոխադրում Ամերիկա և վաճառում: Աքրայից դեպի արևմուտք, օվկիանոսի ափին հիմա էլ կանգնած է բարձր պատերով ու ատամնաձև աշտարակներով մի սպիտակ ամրոց: Մոտ հինգհարյուր տարվա պատմություն ունի այդ շինքը, որ կառուցել են պորտուգալացիները իրենց տիրապետության առաջին տարիներին: Էլմինա կոչվող այս ամրոցում հավաքում էին գերված նեգրերին և հետո վաճառում իբրև ստրուկների: Նավերը մոտենում էին ամրոցին ստորգետնյա ճանապարհներով գերիներին ուղիղ տանում նավային բանտախցերը: Նման ամրոցներ Աֆրիկայում շատ կան:

Անգլիացիներից բացի Աֆրիկա ներխուժեցին նաև ֆրանսիական, իսպանական, բելգիական գաղութարարները: Իտալիան նույնպես անմասն չըմնաց և նա էլ վերցրեց իր բաժինը: Այսպիսով ավելի քան երկու հարյուր միլիոն բնակչություն ունեցող աշխարհամասը ամբողջովին վերածվեց գաղութի: Ահա թե ինչու աշխարհագրության դասագրքերում Աֆրիկան հայտնի է նաև «Գաղութաշխարհամաս» անունով:

Սկսվեց Աֆրիկայի մասսայական թալանը: Տեղի ժողովուրդը ենթարկվեց դաժան ճնշման ու շահագործման: Եվրոպական կապիտալիստները խլեցին բոլոր լավագույն հողերը: Որոշ գաղութներում նրանք տեղական բնակչությանը բռնի տեղափոխեցին հատուկ վայրեր, որտեղից այլևս իրավունք չունեին հեռանալու առանց թույլտվության: Բնիկներին ստիպում էին աշխատել իրենց ածխահանքերում ու հանքահորերում:

Իրենց տիրապետության երկար տարիների ընթացքում գաղութարարները աֆրիկացիների համար ոչ մի լավ բան չստեղծեցին: Ամենուրեք խանութներում վաճառվում են արտասահմանյան ապրանքներ: Ատամի խոզանակ, օճառ, շաքար, ուլունքներ, դեղորայք, գործվածքեղեն և այլն, բոլորը, բոլորը ներմուծվել են դրսից ու վաճառվել թանկ գներով: Իսկ ինչքա՞ն պղինձ, երկաթի ու ալյումինի հանքաքար, կոկոսյան ընկույզ, գետնանուշ, անանաս, կակաո և սուրճ են ձրի գնացել Ֆրանսիա, Անգլիա, Բելգիա, Իսպանիա, Պորտուգալիա, Իտալիա: Գաղութատերերը հիմնում էին միայն այնպիսի ձեռնարկություններ, որոնք շահավետ էր իրենց: Աֆրիկան զուրկ լինելով, արդյունաբերությունից կախման մեջ էր մնում կապիտալիստներից: Գաղութարարները գտնում էին, որ Աֆրիկան

## ԱՖՐԻԿՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ

*Աֆրիկայում ապրում է 216 միլիոն մարդ: Բնակչությունը կազմված է տարբեր ժողովուրդներից ու ցեղերից: Սահարայում ապրում են արաբներ և բերբերներ, որոնք պատկանում են սպիտակ ռասային և խոսում են արաբերեն: Մնացած բնիկները պատկանում են սև ռասային և ունեն մուգ գույնի մաշկ: «Նեգրեր» առանձին ժողովուրդ գոյություն չունի: Նրանք կազմված են բազմաթիվ ժողովուրդներից ու ցեղերից: Սուդանյան ժողովուրդները ապրում են Հասարակածից դեպի հյուսիս և ունեն իրենց լեզուն, Բանտու ժողովուրդները բնակվում են Կենտրոնական և Հարավային Աֆրիկայում և նույնպես ունեն իրենց լեզուն: Բացի այդ, Կոնգո գետի ավազանում ապրում են Պիգմեյների ցեղերը: Սրանք փոքրամարմին մարդիկ են: Մաշկի գույնը ավելի քիչ է մուգ: Զբաղվում են որսորդությամբ և հավաքում են ուտելու բույսեր: Անապատներում և կիսաանապատային վայրերում տեղ-տեղ պահպանվել են բուշմեններ և հոտտենտոտներ: Նրանք ունեն դարչնագույն մաշկ և խոսում են իրենց հատուկ լեզուներով: Եվրոպացիները ամենից շատ ոչնչացրին այս ցեղերին:*


ՄԱՀ-Ի ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ


ԼԻԲԵՐԻԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



*Սուդանում, այնտեղ, ուր իրար են խառնվում Սպիտակ և Երկնագույն Նեղոսները, գտնվում է Գեզիրա նահանգը: Առաջ գյուղացիներն օր ու գիշեր աշխատում էին գաղութարարներին պատկանող պլանտացիաներում, բայց աշխատավարձը հազիվ էր բավարարում սովամահ չլինելու համար: Երեխաներն աշխատում էին մեծերին հավասար, և ժամանակ չէր մնում սովորելու: Բացի այդ, գրեթե դպրոց էլ չկար այս նահանգում: Միայն այն բանից հետո, երբ սուդանի ժողովուրդը անկախություն նվաճեց, ռեսպուբլիկայում սկսվեց դպրոցների կառուցումը: Նկարում դուք տեսնում եք աշակերտների, որոնք սովորում են վերջերս բացված դպրոցներից մեկում:*

չպետք է ունենա իր սեփական տնտեսությունը: Ասում էին նաև, որ բնիկները անընդունակ են ղեկավարելու տնտեսությունը, ղեկավարել կարող են միայն եվրոպացիները:

Մի ժամանակ անգլիացիները Ոսկե Ափում կառուցեցին մի քանի դպրոց և հաշվեցին, որ այդ դպրոցների շնորհիվ յոթ հարյուր տարի հետո Ոսկե Ափի բնակիչները կդառնան գրագետ: Բայց, քանի որ բնակչությունը անընդհատ ավելանում է, դրա համար կպահանջվի երեք հազար հինգ հարյուր տարի: 1957 թվականին, երբ Գանան դարձավ անկախ, բացվեցին շատ դպրոցներ: Իհարկե, այժմ ոչ բոլոր երեխաները հնարավորություն ունեն դպրոց հաճախելու, չկան բավականաչափ դպրոցական շենքեր, ուսուցիչներ, դասագրքեր, նույնիսկ թուղթ ու մատիտ:

Գվինեայում բնակչության մեծ մասը անգրագետ է: Բայց ազատագրությունից անցել է ընդամենը երկու տարի, և այդքան կարճ ժամանակամիջոցում երկու անգամ ավելի շատ դպրոց ու դասարան է բացվել, քան ֆրանսիական տիրապետության 70 տարում:

## ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Աֆրիկայի ժողովուրդների ազատագրական պայքարը վերջին տարիներին շատ ուժեղացավ: Ալժիրում արդեն մի քանի տարի զինված պայքար է գնում: Բայց ֆրանսիական զորքերը չեն կարողանում ընկճել ալժիրցիներին: Գաղութարարները կարծում են, թե իրենց կհաջողվի խաբել աֆրիկացիներին: Նրանք ուզում են ձևականորեն ան-

## ԲԱՈՒԼԵ

*Փղոսկրե Ափում, Նզի և Բանդամի գետերի միջև գտնվում է առասպելական Թագուհի Աուրա Պոկուի երկիրը: Այնտեղ ապրում է նեգրական մի շնորհալի ժողովուրդ՝ բաուլե անունով: Սրանք հռչակված են որպես փղոսկրյա իրեր պատրաստող հմուտ վարպետներ, ինչպես նաև՝ ընդունակ երաժիշտներ ու պարողներ: Բաուլեներն ունեն գեղեցիկ առասպելներ, դիցաբանություններ և հեքիաթներ:*

*Ինչու՞ են այս նեգրերը կոչվում բաուլե: Ահա թե ինչ է պատմում այդ մասին նրանց առասպելներից մեկը, որը 30-ական թվականներին գրի է առել գերմանական գիտնական Հանս Հիմմելխեբերը:*



ՄԱԼԳԱՇԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



ՍՈՄԱԼԻԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



ԹՈՒՆԻՍԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



# ՊԱՏՐԱՍՏԻՐ ԻՆՔԴ

Հաճելի է տոնածառը զարդարել խանութից գնած փայլփլուն խաղալիքներով: Բայց հետաքրքրքիր է ունենալ նաև այնպիսի խաղալիքներ, որոնք ոչ մի խանութում չեն վաճառվում: Դրանք կարող ես պատրաստել ինքդ:

Ահա դու տեսնում ես բժիշկ Այբոլիտին: Գիտե՞ս ինչից է պատրաստված: Այդ մասին կարդա հետևյալ էջում: Ստվարաթղթից կարելի է պատրաստել հետաքրքիր կենդանիներ ու դիմակներ:

## ԲՈՒՐԱՏԻՆՈ

Իսկական Բուրատինոն փայտից է, բայց այս Բուրատինոյի միայն ձեռքերը, վիզն ու ոտքերն են լուցկու հատիկներից, կոշիկները՝ լոբի, իսկ մնացածը ստվարաթուղթ է: Նկարի համաձայն երկտակ ստվարաթղթից կտրիր մարմինն ու գլուխը՝ առանց գլխարկի, հետո գունավոր թուղթ սոսնձիր երկու կողմերում: Նախքան գլխարկ հագցնելը, երկու փունջ մազ սոսնձիր գլխին: Ստվարաթղթերի միջև դիր լուցկու հատիկներ՝ վիզ, ձեռքեր և ոտքեր: Վերջում կպցրու օձիքը՝ սպիտակ թղթից:

Իսկ սպիտակ աղավնի, վագր և ջայլամ պատրաստիր մեր տրված գծագրերի համաձայն:





# ԱՉՔԵՐԸ ԹԱՐԹՈՂ ԿԱՏՈՒ






Հաստ ֆաներայից սղոցով հանել կատվի ուրվանկարը՝ մոտ 60 սմ բարձրությամբ։ Հետո մեխել տախտակե պատվանդանին և ներկել սև գույնով։ Բեղերը, հոնքերը և թաթերը ներկել սպիտակ ներկով, իսկ վզի շղթան և շրջանակը՝ բրոնզագույն։ Աչքերի տեղը դնել ոսպնյակներ և հակառակ կողմից ամրացնել կանաչ, թափանցիկ թղթի կտոր՝ վրան սևացնելով բիբերը։ Աչքերի դիմաց ամրացնել ավտոմեքենայի 12 վոլտանոց մեկական լամպ։

Բրոնզագույն շրջանակի հետևում ամրացնել պայտաձև մագնիս, որի բևեռների վերջավորությունները պետք է անցկացնել ֆաներայի բացվածքների միջով, իսկ երեսի կողմից խփել երկու հաստ պղնձյա եռանկյունիներ՝ կոնտակտներ։

Պատվանդանի վրա մոնտաժել ջերմային ռելեն։ Դրա համար պատվանդանի կողքերին հարկավոր է երկար պտուտակներով ամրացնել երկուական հախճապակյա գլաններ, որոնք օգտագործվում են լուսավորման ցանցի համար և նրանց միջև քաշել նիկելային բարակ լար։ Լարի տակ պատվանդանի վրա ամրացնել երկու արույրե շերտիկներ։ Ստվարաթղթե մեկուսիչ միջադիրի օգնությամբ շերտիկներից մեկը լարով ձգել ու մոտեցնել նիկելային լարին այնպես, որ շերտիկը իր ծայրով կպչի մյուս շերտիկին։

Եթե ձգած նիկելային լարի միջով բաց թողնենք էլեկտրական հոսանք, ապա տաքանալով նա երկարում և թուլանում է։ Լարով միացված արույրե շերտիկը այդ պահին անջատվում է երկրորդ ձողիկից և ընդհատում է էլեկտրական շղթան, որին միացված է ռելեն։ Սառչելիս նիկելային լարը նորից ձգվում է, անջատիչը միացնում է շղթան։

Շղթայի միացումը և անջատումը տեղի է ունենում արագ։

Ռելեն հաջորդաբար միանում է լամպերին և երեսի կողմում գտնվող պղնձե եռանկյունիներին, և սնվում է փոփոխական հոսանքի շղթայից, իջեցնող տրանսֆորմատորի միջոցով, որը տալիս է 12 վոլտ լարվածություն։

Թիթեղից կտրեք 5—6 սմ տրամագծով տափօղակ։

Խաղացողների նպատակն է՝ 4—5 քայլ հեռավորությունից թիթեղյա տափօղակը գցել կատվի վզի ոսկեզօծ շրջանակի մեջ։

Ճիշտ նետման դեպքում մագնիսի բևեռները դեպի իրենց են ձգում տափօղակը, որը փակում է պղնձե եռանկյունիները։ Միանում է ռելեն, և կատվի աչքերը սկսում են թարթել։

## ԱՅԲՈԼԻՏ

Գլխի համար վերցրեք միջին մեծության մի կարտոֆիլ, որը ունենա «քթիկ»։ Ականջները կարելի է պատրաստել ստվարաթղթից, իսկ մազերը՝ բարակ, սպիտակ թղթից։ Դրանք կարելի է ամրացնել լուցկու երկու սրված հատիկներով, որոնք նախապես պետք է լավ սոսնձել։ Բժիշկ Այբոլիտի մարմինը նախ գծագրեցեք սպիտակ ստվարաթղթի վրա։ Երբ կսկսեք կտրատել, մի մոռացեք կետագծերով ցույց տրված միգը։ Վզին քսեցեք սոսինձ և տեղադրեք կարտոֆիլի վրա արված ճեղքերում։ Թևերը, գոտին և գրպանները պետք է առանձին կտրել և կպցնել։ Լսափողը, որով բժիշկը լսում է հիվանդներին, կարելի է պատրաստել սևով ներկված լուցկիներից և մի մեծ կոճակից։ Եթե մի ժապավեն էլ վզին կապեք, բժիշկի արտաքինը անթերի կլինի։



## ՋԱՅԼԱՄ

Թևերի և պոչի հովհարաձև սպիտակ մասերը մեկ-մեկ կտրատեցեք մինչև սև շերտը: Սպիտակ փետուրների ծայրերը ոլորեցեք աղեղաձև ձողի վրա և ծռեք: Կետագծերով և սպիտակ գծերով մեջքից ու կծևերից սեղմեցեք դեպի դուրս: Ոտքերի թաթերը սոսնձով փակցրեք ստվարաթղթի վրա՝ նախօրոք դրանք ծռելով ըստ գծագրի:



## Վ Ա Գ Ր



Ուսերից կտրել մինչև լայնակի կետագիծը։ Ուշադիր եղեք գլխի ձևվածքը կտրելիս։ Թուղթը սև գծերից կտրեցեք մինչև մեջքի կետագիծը։ Ականջների տեղը կտրեցեք մինչև սպիտակ կետագիծը։ Ցույց տրվածի համաձայն, այտերի միջով անցք բաց արեք։ Այստեղ հարկավոր է տեղադրել ձևվածքի Ա և Բ ծայրերը, իսկ Գ և Դ ծայրերը հագցրեք առջևի ոտքերի բացվածքներում։ Հետո կանգնեցրեք խաղալիքը և ծռեք պոչի ծայրը։ Բոլորը ճիշտ կատարելով՝ դուք կստանաք այնպիսի մի խաղալիք, ինչպիսին պատկերված է հաջորդ էջում։



կախություն տալ, բայց առաջվա նման շարունակել թալանը: Այս տարվա հոկտեմբերի սկզբին Նիգերիան անկախություն ստացավ: Սակայն երկրում դեռ տիրություն է անում անգլիական թագուհու կամակատարը՝ գեներալ նահանգապետը: Այդպես ուզեցին վարվել նաև Գանայի հետ: 1957 թվականին, երբ Գանան անկախություն ձեռք բերեց և իրավունք ստացավ դեսպաններ ունենալ ուրիշ երկրներում, գերագույն տիրակալը նորից մնաց Անգլիայի թագուհին: Ժողովուրդը պահանջեց, որ գաղութարարները հեռանան ոչ միայն պետական ապարատից, այլև ժողովրդական տնտեսությունից ու կուլտուրական հիմնարկներից: Այս բոլորը իրենց ձեռքը պետք է վերցնեն աֆրիկացիները: Ահա թե ինչու այս տարի Գանան իրեն հռչակեց ռեսպուբլիկա և երկրից վռնդեց անգլիական գեներալ-նահանգապետին: Երկրի ղեկավարը դարձավ ժողովրդի կողմից ընտրված պրեզիդենտը: Իսկ Թունիսի կառավարությունը որոշեց ազգայնացնել ֆրանսիական կապիտալիստներին պատկանող ձեռնարկությունների մի մասը:

Ազատագրված Կոնգոյի ժողովուրդն էլ պահանջեց բանակից ազատել բելգիական սպաներին և երկիրը մաքրել օտարերկրյա զորքերից: Ժողովրդի այս արդարացի պահանջը կատաղեցրեց իմպերիալիստներին: Ամերիկայի Միացյալ Նահանգների դրդմամբ ու աջակցությամբ նրանք խռովարարներին ոտքի հանեցին ժողովրդի ընտրած օրինական պառլամենտի դեմ: Սակայն Կոնգոյի ժողովուրդը շարունակեց իր պայքարը:

Այս օրինակները ցույց են տալիս, որ աֆրիկացիները անկախություն ստանալով միայն առաջին քայլերն են անում դեպի լիակատար ազատությունը:



*Աֆրիկայում բնակվող բազմաթիվ ցեղերի մեջ շիլլուկները հայտնի են որպես հմուտ որսորդներ ու ձկնորսներ:*

## ԱՖՐԻԿԱՅԻ ՏԱՐԻՆ

1960 թվականը կոչվում է «Աֆրիկայի տարի»: Ինչո՞ւ: Որովհետև այս տարվա ընթացքում ավելի շատ պետություն անկախություն ստացավ, քան



ԿՈՆԳՈՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



ՄԱՐՈԿԿՈՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ

*Ավելի քան երկու հարյուր տարի առաջ իր եղբոր կողմից դաժանորեն սպանված Աուրա Պոկու թագուհին փախչում է Աշանթի (Ոսկե Ափ) երկրից դեպի արևմուտք: Նրա հետ միասին փախչում են նաև նրանք, ովքեր հավատարիմ էին մնացել նրան: Փախստականները կտրում անցնում են տափաստանները, խորանում անտառների մեջ և շարունակում գնալ ու գնալ, մինչև որ Կոմոեի ուժգին ջրերը փակում են նրանց ճանապարհը: Ինչպե՞ս անցնեին գետը: Խորհրդատուն ասում է.*

*«Մենք կփրկվենք, երբ մեկն ու մեկը իր միակ որդուն կնետի գետը»:*

*Այդ ժամանակ թագուհին ոսկով զարդարում է իր հարազատ որդուն և նետում ջուրը: Գետի հատակից մի ժայռ է դուրս գալիս ու կտրում գետի հոսանքը: Փախստականները անցնում են մյուս ափը և փրկվում: «Իմ որդին փրկեց բոլորիս, որպես հիշատակ մեր ժողովուրդը թող կոչվի Բաուլե, այսինքն՝ երեխայի ժողովուրդ»,— ասում է թագուհի Աուրա Պոկուն:*

*Ինչպես ամեն մի առասպել, սա էլ, իհարկե, շատ հնարովի բաներ ունի: Բայց ճիշտ է, որ բաուլեները այդտեղ են եկել Ոսկե Ափից: Լեզվով ու կուլտուրայով նրանք պատկանում են ժողովուրդների այն խմբին, ինչ որ Գանայի հիմնական բնիկները՝ աշանտիները: Ճիշտ է նաև, որ գոյություն*

նախորդ բոլոր տարիներին: 1956 թվականին Աֆրիկայում կար ընդամենը հինգ անկախ պետություն: Չորս տարվա ընթացքում այդ թիվը կրկնապատկվեց: Իսկ այս տարի գաղութային լուծը թոթափեցին Կամերունը, Տոգոն, Սոմալին, Մալին, Մադագասկարը, Նիգերիան: Այժմ Աֆրիկայի անկախ պետությունների թիվը հասել է 26-ի: Շուտով այդ ընտանիքում կավելանան նոր երկրներ, որոնք դեռևս գաղութ են:

## ԲԱՐԵԿԱՄՆԵՐՆ ՈՒ ԹՇՆԱՄԻՆԵՐԸ

Գաղութարարները ոչ մի միջոցի առաջ չեն կանգնում իրենց իշխանությունն Աֆրիկայում պահպանելու համար: Ազատության համար պայքարող ժողովուրդներին նրանք սպառնում են զինված ուժերով, վախեցնում են, թե միայնակ կմնան և սովամահ կլինեն, թե ոչ մի երկիր առևտուր չի անի նրանց հետ: Երբ Գվինեան որոշեց լրիվ ազատվել ֆրանսիացիներից, ֆրանսիական կապիտալիստները դադարեցին վաճառել պարենամթերք, մեքենաներ և այլ անհրաժեշտ ապրանքներ, կործանեցին այն շենքերը, որտեղ ֆրանսիական զորքերն էին մնում, հիմնարկներից տարան գրասենյակային բոլոր իրերը, ընդհուպ մինչև սեղաններն ու գրամեքենաները:

Բայց այստեղ էլ կապիտալիստների հաշիվները սխալ դուրս եկան: Ազատագրված երկրները մենակ ու անօգնական չմնացին: Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների համակրանքը գաղութային լուծը թոթափած ժողովուրդների կողմն է: Կոնգոյում տեղի ունեցած դեպքերը պարզ կերպով ցույց տվեցին, թե ովքեր են ազատության համար պայքարող ժողովուրդների բարեկամներն ու թշնամիները:

Երբ Գանան անկախություն ձեռք բերեց, Սովետական Միությունը առաջինը եղավ, որ ճանաչեց այդ անկախությունը և նորաստեղծ պետության հետ հաստատեց դիվանագիտական, տնտեսական ու կուլտուրական հարաբերություններ: Մեր երկիրը նույնպիսի սիրով ողջունեց նաև մյուս անկախ պետությունների ծնունդը: Սովետական մարդիկ միշտ էլ պատրաստ են օգնություն ցույց տալ Աֆրիկայի ազատագրված ժողովուրդներին՝ զարգացնելու իրենց տնտեսությունը և ամուր կանգնելու սեփական ոտքերի վրա:



ԼԻԲԻԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



ԵԹՈՎՊԻԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ



ԳԱՆԱՅԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՊԵՏԱԿԱՆ ԴՐՈՇԸ

## ԽԱՈՒՍԱ ԵՎ ՖՈՒԼԲԵ

*Այնտեղ, ուր Սահարան հարավում վերածվում է խոտավետ ու մացառուտ ընդարձակ տափաստանի՝ սավաննայի, գտնվում է խաուսաների երկիրը՝ Նիգերը: Սա աշխարհի ամենանոսր բնակչություն ունեցող վայրերից է:*

*Մինչև ֆրանսիացիների տիրապետության տակ ընկնելը, խաուսաներն ունեին իրենց պետությունը, որն զբաղեցնում էր Արևմտյան Սուդանի մի զգալի մասը: Դեռ այն ժամանակ կային շատ քաղաքներ, զարգացած էր արհեստն ու առևտուրը:*

*է ունեցել թագուհի Ասրա Գոկան, որի տիրապետության ժամանակ բազմաթիվ կռիվներ են մղել իրենց անկախությունը պահպանելու համար: Ասրա Գոկան միշտ էլ հաղթել է: Ժողովուրդը դա բացատրում էր նրանով, որ թագուհու մոտ է գտնվել կախարդական թալիսմանը: Սակայն ֆրանսիացիների հետ կռվելիս, թալիսմանը կորչում է, և դա էր պատճառը, որ իրենց երկիրը գաղութ դարձավ:*

*Գյուղերում խաուսաների հետ միասին ապրում են նաև ֆուլբեներ: Այս ժողովրդի ծագումը գիտնականների համար կատարյալ հանելուկ է: Ոմանք նրանց համարում են արաբների ազգակիցներ, ուրիշներն էլ՝ Եգիպտոսի հնագույն տերերի՝ հիքսոսների հետնորդներ: Սակայն ֆուլբեները վաղուց արդեն ձուլվել են խաուսաներին, յուրացրել նրանց լեզուն և սովորույթները:*

*Խաուսաներն ու ֆուլբեները զբաղվում են երկրագործությամբ: Աճեցնում են կորեկ, սորգո, մանիոկ և հասկավոր այլ կուլտուրաներ:*

# ԹԵ ԻՆՉՈՒ ԱՄԵՆ ՄԱՐԴ ՈՒՆԻ ԻՄԱՍՏՈՒԹՅԱՆ ՀԱՏԻԿ

*(Գանայի ժողովրդական հեքիաթ)*



Սարդ Անանսին իրեն համարում էր աշխարհի ամենամեծ իմաստունը: Նա գիտեր ինչպես կարելի է կառուցել-կամուրջներ ու պատնեշներ: Գիտեր կտոր գործել և որսորդությամբ զբաղվել: Բայց ոչ մի անգամ ոչ ոքի հետ իր փորձով ու իմաստությամբ չէր չափվել:

Մի անգամ այս սարդը նույնիսկ որոշեց հավաքել ողջ աշխարհի իմաստությունը, լցնել մի սափորի մեջ, բերանը փակել ու ոչ ոքի ցույց չտալ: Երկար ժամանակ նա թափառում էր աշխարհում, հատիկ առ հատիկ հավաքելով իմաստությունը: Իսկ երբ սափորը լիքը լցվեց, նա որոշեց կախել այն ամենաբարձր ծառի կատարին: Թող մեկն ու մեկը փորձի հասնել:

Սափորն ամուր փորին սեղմած՝ Անանսին մագլցեց ծառը: Դժվար էր բարձրանալը, սափորը թույլ չէր տալիս, որ նա ամուր բռնի ծառի բնից: Ամեն րոպե կարող էր վայր ընկնել:

Ինտիկումա սարդիկը երկար նայեց Անանսին, վերջապես համբերությունը հատավ.

— Ես տեսնում եմ, որ դու դժվարանում ես բարձրանալ: Սափորը դիր մեջքիդ, այն ժամանակ հեշտ կլինի:

Անանսին լսեց որդուն և բեռը դրեց մեջքին: Սարդի բոլոր թաթերն ազատվեցին, և նա արագ-արագ վազեց դեպի վեր:

Բայց Անանսին կանգ առավ հանկարծ, զարմացած նայեց որդուն. «Սա ի՞նչ բան է, մտածեց, ես տանում էի իմաստությամբ լի մի սափոր և գլխի չէի ընկնում, թե ինչպես ավելի հարմար կլինի ծառը բարձրանալ»:

Բարկացավ Անանսին և սափորը գետին շպրտեց: Մեծ բարձրությունից ցած ընկնելով, սափորը փշուր-փշուր եղավ, և նրանում հավաքված իմաստությունը շաղ եկավ չորս կողմ: Մարդիկ վազելով վրա հասան և ամեն մեկը վերցրեց իմաստության մի հատիկ:

Ահա թե ինչու իմաստությունը մի մարդու մեջ չի պարփակված: Ամեն մեկի մոտ էլ գոնե մի հատիկ կգտնվի: Իսկ եթե հանդիպեք հիմարի, ուրեմն՝ նա ծուլացել է գնալ այնտեղ, ուր փշրվեց սափորը:

## ԱՖՐԻԿՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՌԱԾՆԵՐ

1. Թե ցանկանում ես խելացի լինել՝ նստիր և լսիր:
2. Գոռալը զորեղության նշան չէ:
3. Ջահել ժամանակ թե փայտ հավաքես, ծերության օրերին էլ չես մրսի:
4. Ով արևի տակ աշխատել է, կարող է հանգիստ ուտել ստվերում:
5. Խոստումը պարտք է:
6. Կապիկը, եթե պոչն էլ կտրի, կապիկ կմնա:
7. Ծույլի համար ամեն օր տոն է:

## ՍԱՐԴԸ, ՆԱՊԱՍՏԱԿՆ ՈՒ ՔԱՐԸ



Ինչպես եղավ, Սարդ-Սիլին սաստիկ սովածացավ:

Նա շրջում էր անտառում և ուտելիք փնտրում: Հանկարծ Սարդը նկատեց բարձր ծառից կախված մի քար ու զարմացած բացականչեց.

— Է՜յ, կոլուբուկուլո՜:

Այդ խոսքի վրա Քարը ցած ընկավ և քիչ մնաց Սարդի գլուխը փշրեր:

Սարդ-Սիլին ոչինչ չասաց և գնաց փնտրելու Անտիլոպին. բերելով նրան այդ չարաբաստիկ վայրը, առաջարկեց արտասանել այն մոգական բառերը:

Քարի հարվածից ջախջախված, անտիլոպը փռվեց գետնին և այլևս տեղից վեր չկացավ:

Այդ ժամանակ Սիլին, որին այս դեպքը շատ զվարճացրեց, սկսեց նույն փորձությանը ենթարկել անտառի բոլոր գազաններին, սկսած ամենամեծերից, մինչև ամենափոքրերը:

Նապաստակն այդ ժամանակ գյուղում չէր, բայց հենց որ նա վերադարձավ, Սարդն անմիջապես առաջարկեց նրան գնալ Քարի մոտ:

Երբ նրանք մոտեցան ծառին, Նապաստակը Սարդին ասաց.

— Դե, գործի անցիր: Ի՞նչ պետք է ասել:

Ես ոչ մի բառ չեմ հիշում:

Այն ժամանակ Սիլին շշնջաց նրա ականջին մոգական բառերը:

— Ինչպես ասացի՞ր, — նորից հարցրեց Նապաստակը:

Սիլին վրդովված բղավեց.

— Չէ՞ որ ես քեզ արդեն ասացի. «Էյ, Կոլուբուկուլո՜»:

Քարը նույն րոպեին ընկավ Սարդի վրա և ճզմեց նրան:

Եվ Նապաստակը հաղթանակով վերադարձավ գյուղ:

## ՄԵԾ ԼԻՃԸ

(Նեգրական հեքիաթ)



Բարձր լեռներում կար մի լերկ ապառաժ, որի վրա թռչունները իջնում էին հանգստանալու: Թե ինչ թռչուններ էին դրանք, հայտնի չէ:

Մի անգամ եկան թառեցին այդ ապառաժին շատ խոշոր թռչուններ: Նրանք սաստիկ ծարավ էին ու որոշեցին ջուր գտնել: Եվ այնպես թափով զարկեցին ժայռին, որ կտուցները կոտրվեցին ու իրենք էլ մեռան, ոչնչացան:

Եկան ուրիշ թռչուններ, էլի նրանց պես զարնվեցին ժայռին ու կործանվեցին:

Այդ ժամանակ հայտնվեց մի փոքրիկ թռչուն: Նա սկսեց դանդաղ կտցահարել ապառաժին ու մանրիկ-մանրիկ ավազահատիկներ պոկոտել: Վերջապես ապառաժից սկսեց ջուր կաթել: Թռչնիկը ջուր խմեց, զովացավ ու շարունակեց կտցահարել: Հանկարծ ջուրը հեղեղի պես դուրս հորդեց ու սկսեց հոսել:

Փոքրիկ թռչնիկը թռավ գնաց: Իսկ ներքևում առաջացավ մի մեծ լիճ:

Ռուս. թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ



# Քիչ սպասիր

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Կոտրվել է տիկնիկս,
Բայց ես մարդու չեմ ասի.
Կպատրաստեմ ես ինքս,
Թող որ մի քիչ սպասի...

Դպրոց գնամ սովորեմ,
Հետո գնամ գործարան,
Փայտ սղոցեմ, ոլորեմ,
Ոտք պատրաստեմ քեզ համար։

Դերձակի մոտ կգնամ,
Որ կար ու ձև սովորեմ.
Հետո՝ դառնամ կոշկակար,
Էս՝ քեզ կոշիկ, էս՝ շորեր...

Բա՜, տեսնում ես, քո մասին
Մտածում եմ ամեն օր.
Միայն մի քիչ սպասիր,
Սովորել է հարկավոր...

# Գիտե՞ք ինչու

ՄԱՐՈ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Գիտեք ինչու է Գոհարիկը խելոք: Որովհետև նրա մեծ քույրիկը՝ Կարինեն խելոք աղջիկ է: Իսկ երբ մեծը խելոք է լինում, փոքրիկն էլ նրան է նմանվում:

Օրինակ, մայրիկը միայն մեկ անգամ է Կարինեին բացատրել, որ ուտելուց առաջ պետք է ձեռքերը լվանալ, որովհետև անլվա ու կեղտոտ ձեռքերի վրա հազար ու մի բացիլ կա:

Ու Կարինեն երբեք անլվա ձեռքերով չի մոտենում սեղանին:

Գոհարիկն էլ է այդպես անում: Դեռ ավելին: Նա այնքան օճառ է քսում ձեռքերին, որ նրա փոքրիկ թաթիկները կորչում են օճառի պղպջակների մեջ:

Կարինեն լավ գիտի, որ առավոտյան լվացվելուց հետո պետք է «բարի լույս» ասել, իսկ քնելուց առաջ՝ «բարի գիշեր»:

Գոհարիկն էլ է այդպես ասում:

Կարինեն ամեն անգամ դպրոցից տուն գալուն պես՝ մայրիկի մոտ կարդում է իր նոր դասերը: Գոհարիկն էլ մանկապարտեզից գալուն պես՝ արտասանում է այնտեղ սովորած իր նոր ոտանավորները:

Թե՛ տանը, թե՛ դրսում և թե մանկապարտեզում Գոհարիկին սիրում են: Նա խելոք է, որովհետև նրա մեծ քույրիկը՝ Կարինեն խելոք աղջիկ է:

Երբ մեծը խելոք է լինում, փոքրիկն էլ նրան է նմանվում:

ԻՐԻՆԱ ՄՆԱՑՈՎԱ



# ԲԱԿՈՒՄ

Ձմեռը ուրբաթ հրճվանք է բերում...
Տների վրա նոր թե հնամյա
Մթնշաղն է իր թևերը փռում։
Զամբյուղ, սահնակով մանուկներն ահա
Սահում են խմբով սարի լանջն ի վայր։
Կապույտ գլխարկով մի աղջիկ ճչում
Եվ ծիծաղում է այնպես խանդավառ։
Բայց խումբն է հանկարծ փոսի մեջ թռչում...
Բոլորն էլ ձյան մեջ փռվում ցանուցիր.
Զամբյուղից կարծես սունկեր են թափվում...
Մութն է տարածում թանձր քողը իր,
Ծխի սյուներն են արդեն վեր հյուսվում։
Լույսերն են շողում պատուհաններից,
Կանչում են. «եկեք, ուշ է, եկեք տուն»։
Թող գան, անկողին թող մտնեն նորից.
Կարծում եք՝ նրանք կքնեն իսկույն։
Ամեն երեխա կերազի երկար,
Որ շուտով պիտի լինի տոնածառ։
Ինչեր կբերի նոր տարին իր հետ...
Որ ինքը պիտի դառնա նավապետ
Կամ դառնա հայտնի լիհնոդերասան,
Օտար երկրներ գնա զանազան
Ցամաքով, ծովով-միևնույն է դա,
Միայն թե մի օր անունը թնդա։

# ԽՐԻՊԱՆԿԱ

Գետ չէ, այլ մի փոքրիկ առվակ,
Ունի ցածրիկ ափեր.
Այնտեղ լողում են շարունակ
Դատարկ տուփեր, ամպեր։

Ձագերի հետ սագն է հրճվում
Ճահճախոտի մեջ խիտ։
Ջուրը անցնում, ու չի թրջվում
Անգամ փոքրիկ մի ծիտ։

Ջուրը նվազ և հունը՝ նեղ.
Վոլգա չէ լայն ու հորդ։
Գայլաձուկ չես որսա՝ այնտեղ,
Միայն... անձրևաորդ։

Բայց այդ առվում լազուրն երկնի
Ավելի թանձր է, զով,
Եվ մոտերքում դեռ չես գտնի
Մի ուրիշ ջուր հոսող։

Տե՛ս, պարիսպ են դարձել ահա։
Խոտն ու մացառն ափին։
Ճահիճն իր շունչն է մեղրահամ
Սփռում ամռան տապին։

Ամեն մեկը իր կյանքն ունի,
Թեկուզ ճահիճ կոչես,
Բայց ճահիճն այդ թե չլինի,
Կյանքը կարծես այն չէ...

## ԹՌՉՆԻԿ

Բնից հանկարծ
Ընկավ մի ճագ
Խոտերի մեջ,
Ծառերի տակ։

Սպեղանի
Դրի վերքին...
Ուտում էր միշտ
Հացն իմ ձեռքի։

Բայց թե չուզեց
Ապրել ինձ հետ՝
Երբ մեծացավ,
Կորավ անհետ։

Դա ինձ համար
Մնաց գաղտնիք.
Ինչո՞ւ գնաց...
Ա՜խ, դու թռչնիկ։



## ԱՌՅՈՒԾ

Շեկ առյուծն է նստել ահա
Գրքերի մոտ, պահարանում։
Նայում եմ ես զուսպ պահած,
Նայում է նա... չի չարանում։
Տնպահ շան պես խիստ, խելացի,
Կարծես հեգնում ամեն անգամ,
Ասում է ինձ. «Զգուշացի՛ր,
Գուցե... առյուծ եմ իսկական»։



## ԿԱԹԻԼ

Կաթիլն իջնում է ապակուց,
Նկարելով բարակ մի հետք,
Հողն արև է տենչում վաղուց,
Իսկ նա չկա, չկա, գիտե՞ք։
Մեգ է, մշուշ մեր հյուսիսում
Վաղ ենք վառում լույսերը մենք։
Ջուրն ապակին ի վայր հոսում,
Նկարում է խոնավ մի հետք...
Մի աղջիկ է պառկած հիվանդ
Եվ նայում է, նայում անթարթ
Դանդաղ հոսող կաթիլների
Պարզ, թափանցիկ արահետին։
Այդ աղջիկը փոքրիկ է դեռ,
Արևին շատ է կարոտել.
Ընկել է հորդ անձրևի տակ,
Մրսել սաստիկ։ Ահա ինչու
Ամբողջ օրը պառկած մենակ՝
Փռշտում է, ծանր շնչում։
Հազում է նա երկար, երկար։
Ձայնն է հասնում արեգակին,
Որ շողում է ծովեզերքին,
Ուր աշունն էլ ամառ է վառ։
Տեսավ՝ հիվանդ է երեխան,
Էլ չկորցրեց ոչ մի վայրկյան,
Վճռեց թողնել հարավը տաք
Ու լողացող բոլոր մարդկանց։
Արդեն ունի մի նպատակ.
Փրկել հիվանդ այն աղջկան։
Եվ աղջիկը ինչ է տեսնում.
Ամպից իջավ շողն առաջին,
Հուրհրատեց ննջարանում։
Ջքվեց կաթիլն անգամ վերջին։
Այ քեզ հրաշք... Եվ արդարև
Ուշ աշնա՞ն էլ այսքան արև,
Ինչ պայծառ օր զարմանալի.
Ե՞տ է եկել ամառն էլի...
Լաց չի լինում այն աղջիկը.
Ծիծաղում է, երջանիկ է։
Ջէ՞ որ վաղը, ու՞մ չի հայտնի,
Նրա հարբուխն անհետ կանցնի։

*Ռուս. թարգմ. Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

*Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ*




# ԱՅՍՊԵՍ

Աշունը բազմերանգ գույներով է զարդարել մեր քաղաքի ծառուղիներն ու զբոսայգիները: Այնքան պայծառ ու գեղեցիկ օրեր են, որ թըվում է բոլորովին էլ աշուն չէ, այլ ամառ, իսկական ամառ՝ կապույտ երկնքով և ջերմ արևով:

Այս տարվա հոկտեմբերը երկար կմնա Երևանի Գորկու անվան դպրոցի 6-րդ դասարանցիների հիշողության մեջ: Այդ օրը, ինչպես միշտ, ջոկատի հավաքին եկել էին բոլոր պիոներները: Ամեն ինչ հանդիսավոր տեսք էր ստացել: Նրանք անհամբեր սպասում էին իրենց ջոկատավար Սարգիս Մնացականյանին: Զյունափայլ վերնաշապիկների վրա շողշողում էին կարմիր փողկապները, որոնք կարծես ավելացնում էին նրանց աչքերից ցայտող կրակը:

Նրանք ամբողջ ջոկատով պետք է քննարկեին պիոներական երկամյակի ծրագիրը: Երկու տարի հետո, 1962 թվականի մայիսի 19-ին մեր մեծ Հայրենիքի բոլոր պիոներների հետ միասին նրանք կտոնեն Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության 40-ամյակը: Իսկ մինչ այդ, նրանք պետք է կատարեն շատ լավ և օգտակար գործեր: Բայց ինչպիսի՞ գործեր: Չէ՞ որ նրանք առաջինն արձագանքեցին Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության կենտրոնական խորհրդի կոչին, ուրեմն պետք է աշխատեն միշտ էլ առաջինը լինել:

Դեռ դպրոցի և ոչ մի դասարանում խոսք չէր եղել պիոներական երկամյակի մասին, Խանջյանի անվան ջոկատը արդեն քննարկում էր ծրագիրը, պիոներները վիճում էին միմյանց հետ, առաջարկություններ անում, նրանցից յուրաքանչյուրը ցանկանում էր մի լավ գործ կատարած լինել:

— Մակուլատուրա հավաքենք,— առաջարկեց Ստյոպա Հակոբյանը:

— Իմ կարծիքով, անհրաժեշտ է նաև մետաղի ջարդված հավաքել,— ասում է ջոկատի խորհրդի նախագահ Անժելա Սայամյանը:

— Իսկ մի՞թե վատ կլինի, եթե մենք մեր դպրոցը կանաչապատենք, — լսվեց վերջին նստարանից:

— Մեր բակը մեծ է և ընդարձակ, գրադարան կազմակերպենք մեր բակում, գրքեր հավաքենք, գրադարանավար ընտրենք,—ասում է մեկ ուրիշը:



— Լերմոնտովի փողոցում 40 ծառ տնկենք, որ այնտեղ էլ լինի սոսվերախիտ ծառուղի:

Շատ առաջարկություններ եղան և համարյա բոլորն էլ մտան երկամյակի ծրագրի մեջ:

Հոկտեմբերի 2-ին Խանջյանի անվան ջոկատի 25 պատանի լենինյաններ սկսեցին պիոներական երկամյակի ստարտը: Մեկ ժամվա ընթացքում նրանք հավաքեցին 2000 կգ. մետաղի ջարդված, որոշված 15000 կիլոգրա-

մից, իսկ հետո որոշումը փոխվեց. երկամյակի փոխարեն որոշեցին այդքան մետաղի ջարդված.ք հավաքել մինչև Հայաստանում Սովետական կարգերի հաստատման 40-ամյակի օրը:

Օր-օրի աճում է մակուլատուրայի քանակը: Հունան Ավետիսյանի ծննդավայր Ծավ գյուղի դպրոցական գրադարանին է ուղարկված 100 կտոր գեղարվեստական գիրք:

Մեր հասարակության պայծառ դեմքերից շատերը սովորել և դաստիարակվել են Մ. Գորկու անվան դպրոցում և եղել են Խանջյանի անվան ջոկատի պիոներներ: Այդպիսիներից

# ՍԿՍԵՑԻՆ ՆՐԱՆՔ



*Լուսանկարները՝ ԶՈՆԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԻ*

1. Պիոներները չեն մոռանում իրենց կանաչ բարեկամներին, չէ՞ որ ծառերն էլ խնամք են պահանջում:

2. Շուտով Ղափանի շրջանի Ծավ գյուղի պիոներները կստանան Մարետա Ստեփանյանի, Սոֆյա Հակոբյանի, Անժելա Սայամյանի և Գրիգոր Խաչատրյանի ուղարկած նվերները:

են՝ կոմպոզիտորներ Առնո Բաբաջանյանը, Ադամ Խուդոյանը, գրողներ՝ Ռաֆայել Արամյանը, Գևորգ Էմինը, Լևոն Միրիջանյանը: Ջոկատի նախկին պիոներներից շատերը Հայրենական պատերազմի օրերին իրենց կյանքը զոհաբերեցին Հայրենիքի համար. Նրանցից են՝ Մարսել Մարտիրոսյանը, Միհրան Միրիջանյանը, Լևոն Աբրահամյանը, Ռաֆիկ Ստեփանյանը և ուրիշներ: Նրանց հիշատակը վառ պահելու համար Խանջյանի անվան ջոկատի պիոներները դպրոցում ստեղծել են անկյուն և կոչել՝ «Նրանք կրել են կարմիր վզկապ»:

Վեցերորդ դասարանցիները չեն մոռանում նաև հոկտեմբերիկներին, օգնում են ուսման մեջ ետ մնացողներին, հետևում կարգապահությանը, սովորեցնում երգեր: Իսկ նախադպրոցական հասակի երեխաների մոտ էլ ավելի շատ անելիքներ ունեն: Նրանք վերցրել են 33 մանկապարտեզի շեֆությունը: Վերանորոգում են խաղալիքները, նորոգում գրքերի շապիկները, համերգներ կազմակերպում, իսկ ամենահետաքրքիրը նրանց կազմակերպած տիկնիկային ներկայացումներն են: Ամեն ինչ անում են իրենց ձեռքերով: Հեռու չէ այն օրը, երբ կբացվի վարագույրը, և նրանք ելույթ կունենան իրենց դպրոցական ընկերների ու մանկապարտեզի երեխաների առաջ: Արդեն բեմադրության համար պատրաստվում է Աթաբեկ Խնկոյանի առակը՝ «Գայլն ու կատուն»: Այս գործում նրանց օգնում է տիկնիկային թատրոնի դերասան Բորթյան Պավլոսը:

Նրանք սերտ բարեկամական կապեր են ստեղծել Կիրովի անվան գործարանի կոմունիստական աշխատանքի բրիգադի մարդկանց հետ, սովորում են մեծերից ապրել և աշխատել կոմունիստաբար: Առաջին հանդիպման ժամանակ Խանջյանի անվան ջոկատի պիոներները ծանոթացան սոցիալիստական աշխատանքի Հերոս Սերգեյ Ամիրխանյանի հետ:

Երկամյակի ծրագրում կան նաև հետևյալ կետերը:

Ուսումնասիրել Երևանի պիոներների պատմությունը և հավաքած նոր փաստաթղթերը հանձնել Պիոներների պալատի մեթոդ-կաբինետին: Ամառային արձակուրդներից 20 օր նվիրել իրենց դպրոցական շենքի վերանորոգմանը: Իսկ անցյալ ամառ նրանք արշավի դուրս եկան՝ ուսումնասիրելու մեր ռեսպուբլիկան: Եղան Հանքավանում և Ծաղկաձորում, ապրում էին վրաններում: Վաղ առավոտյան նրանց արթնացնում էր պիոներական շեփորը: Իսկ 35 տարի առաջ այս վայրերում առաջին անգամ ճամբարային վրաններ խփեցին Խանջյանի անվան ջոկատի պիոներները: Ի պատիվ նրանց, նույն անունը կրող ջոկատի 9-րդ սերունդը Հանքավանում Մարմարիկ գետի ափը կոչեց Ուրախության ափ, իսկ Ծաղկաձորի հովիտը՝ Խիզախների հովիտ: Նրանք համոզված են, որ ամբողջ ջոկատով կմասնակցեն տուրիստների 2-րդ ռես-

պուբլիկական հավաքին. և այս կետը նույնպես մտցրել են երկամյակի ծրագրի մեջ:

Խանջյանի անվան ջոկատն ուսումնասիրում է պիոներական աստիճանները. որոշել են սովորել 10 երգ և 10 պար Սովետական Միության ժողովուրդների ազգային երգերից և պարերից: Նրանք բարեկամական կապերի խիտ ցանց են ստեղծել, որը ծավալվել է շատ հեռու, մեր երկրի սահմաններից դուրս: Նամակագրական կապեր ունեն Պեկինի, Բուխարեստի, Սոֆիայի, Ուլան-Բատորի և այլ երկրների 6-րդ դասարանցիների հետ: Պեկինի 4 դպրոցից Սյու-Ցիու-յան Խուագուլյան Գրիգելդային գրած նամակներում պատմում է իր դասերի մասին և խնդրում է պատմել ծաղկաշատ Հայաստանի մասին: Նրանք միմյանց դրոշմանիշեր են ուղարկում ու նկարազարդ բացիկներ: Գրիգելդան չինացի պիոներին ուղարկել է մի ծանրոց, որի մեջ դրել է Երևանի տեսարժան վայրերի նկարները, կոնֆետներ, լուցկիներ և այլն:

Շատ հետաքրքիր է ընթանում Սովետական Միության 40 քաղաքների 6-րդ դասարանցիների մրցությունը. թռչում են նամակներն ամեն կողմ՝ դեպի ցուրտ հյուսիս, Կոմսոմոլսկ, Լենինգրադ, Կիև, Աշխաբադ, Դոնբաս և այլուր: Այդ նամակներում պատմըվում է պիոներական գործերի, հայ, ռուս, լիտվացի, ուկրաինացի, վրացի, ադրբեջանցի պիոներների ամուր և անխախտելի բարեկամության մասին:

Դեռ որքան հետաքրքիր և գովելի գործեր են կատարելու Խանջյանի անվան ջոկատի պիոներները:

ՌԱԻՍԱ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# Սանամ տատի ջաները

ՀԱՄԼԵՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

I.

—Բարո՛վ, հազա՛ր բարի եկար, հեգնանքով դիմավորեց Սանամ տատը Վազգենիկին. Էլի գնացել էիր էն անիծված առուն: Որ ինձ չես լսում, իմ թոռնիկը չես: Գնա՛:

Վազգենիկը նայեց տատի աչքերի մեջ, իսկ տատը, իբրև թե նեղացած, գլուխը շուռ տվեց:

— Տատի՛, թե որ իմը չեմ, բա ո՞ւմն եմ: Լողանում էի, էլի:

— Գնա՛, ասացի, չեմ ուզում երեսդ տեսնել: Ջրի ձուկ ես, հո տղա չես ինձ համար:

— Չէ՛, տատի ջան, որ այդպես է, էլ չեմ գնա:

— Դու ասիր, ես էլ հավատացի: Քո խոսքը-բանը խոսք:— Ամփոփեց տատը ու քիչ-քիչ հանդարտվեց:

Նստեցին ընթրիքի:

Սառը ջրում լողանալուց հետո Վազգենիկը ախորժակի պես վրա տվեց թանաբրդուճին, խփշտեց, քաշվեց թախտի մի անկյունը:

Սանամ տատը հավաքեց ամանը, ափսեները լվաց, որ տեղը դնի, մեկ էլ պահարանի վրա նկատեց կոշկակարի մի դանակ ու բիզ:

— Էս ո՞ւմն է, Վազգենիկ ջան:

— Իմն է: Ուստա Հակոբն է տվել:

— Ինչի՞ է տվել:

— Ես ուզեցի, նա էլ տվեց, որ բանեցնեմ:

Տատը կասկածանքով նայեց Վազգենիկին:

— Կհարցնեմ հա՛, տե՛ս...

Հարցրու, ուզում ես հենց հիմա գնա հարցրու: Չգիտե՞ս, մենք դպրոցում կոշիկ կարել ենք սովորում:

Հա՞, հանգստացավ Սանամ տատը, որ էդպես է՝ լավ է: Մարդը հազար փեշակ պիտի ունենա: Բայց ուստից ես չինկնես հա՛, ուստեն աչքի լույս է...

— Իհա՛րկե, տատի՛:

— Դե մի բեր դասդ ասա տեսնեմ:

— Ո՞րն ասեմ, տատի, հայո՞ցը, ռուսա՞ցը...

— Հայոցն ասա,—վճռեց Սանամ տատը, մտածելով, որ դրանից գոնե մի քիչ գլուխ կհանի:

— Հայո՞ցը, լա՛վ, անգիր է, մի հատված «Ոսկի քաղաքից» «Ժա-մանակով-ժամանակով Հնդկաստանի Բենարես քաղաքում ապրելիս է լինում Բրահմա թագավորը...»—սկսեց և մի շնչով մինչև պարբերության վերջը գնաց:

— Ապրե՛ս, ջա՛ն, գովեց տատը, բայց կասկածանքով նայեց թոռանը. չլինի՞ թե անիրավը խաբեց, հին դասն ասաց:

Երբ Սանամ տատը համոզվեց, որ Վազգենիկը իրոք սովորել է, որ-

վա դասերը, հանգստացավ։

— Ա՛յ, հիմա աչքիս լույսն ես, բան չեմ ասում։ Բայց մեծի խոսքը գետին չեն գցի։ Մեծը որ ասաց՝ ասաց։ Ա՛յ, մենք էնտեղ, ֆերմայում հազար երեք հարյուր թև հավ ունենք։ Հավն ի՞նչ է որ։ Անխելք հավ։ Բայց որ զանգը տալիս եմ, գալիս են, ո՜նց են գալիս։ Հասկանում են, որ իրենց լավն եմ ուզում։

— Հա՛, հա՛, հա՛, —ծիծաղում է Վազրիկը, — բա ես հա՞վ եմ։ Ես խոզ եմ՝ կարմիր գլխով,

Խոս բուխախով,
Երկեն վզով,
Ցից բոլոզով...

Ծիծաղում են տատն ու թոռը։

— Այ չմեռնես, հա՛, — ասում է Սանամ տատը։ — Շան լեզու կա բերանը։ Երեխա չի, կրակ-պատիժ է։

2.

Իրոք «կրակ-պատիժ» է Վազրիկը։ Տատի հոգին հանում է, հարևաններին ու երեխաներին էլ հանգիստ չի տալիս։ Օր չի անցնում, որ մեկը չբողոքի Վազրիկից։ Վշտանում է տատը ու հաճախ դիմում թոռանը.

—Վազրիկ ջան, աչքի լույս ջան, ա՛յ, էդպես որ անես, կմեռնեմ, կմնաս ուրիշի դռները։ Տեսնո՞ւմ ես, բերնես բաղցր պատառը քեզ եմ կերցնում, ասում եմ սովորես, մարդ դառնաս։ Քո չափ տղերքը ամեն մեկը մի բանի պոչ բռնել են։ Իսկ դու...

Այդ պահերին Վազրիկը փոքր-ինչ լրջանում է, տխրում։ Սակայն կես ժամ չանցած, մեկ էլ տեսար տղերքին առած, սլանում է դեպի գյուղի ծայրը՝ ջրանցքում լողանալու։ Կամ թե գյուղամիջում մի ավտոմեքենայի մոտ կանգնած՝ օգնում է վարորդին։

Հաճախ, երբ խաղընկեր չի գտնում, Վազրիկը ճամփան ծռում է, մտնում կոշկակար Հակոբի արհեստանոցը։ Նստում իշոտնակին և զրուցում ուստայի հետ։ Ուստան, ճիշտն ասած, մի քիչ երես է տալիս նրան. հետը վարվում ինչպես հասակակցի։ Եվ ահա, ի նշան մտերմության, ուստա Հակոբը միայն Վազրիկին է թույլ տալիս դանակը սրել կամ փայլուն կաշվից մի կտոր կտրել։ Տղան շոյված է զգում ուստայի ընկերությունից։



3.

Վազրիկը ինքն էլ չիմացավ, թե ինչպես դպրոցից հասավ տուն։ Ինչ-որ անորոշ ուրախությունից խենթացած՝ ասես թռչելով անցավ գյուղի մի ծայրից մյուսը։

Գործնական աշխատանքի դասատուն Վազրիկին գովել էր բոլորի առաջ։

— Շնորհքով տղա ես, — ասել էր, — այսպես գործ անողին կարելի է նոր կոշիկ էլ վստահել։ Ապրե՛ս, տղաս։

Վազրիկը միանգամից ինքն իր աչքին բարձրացավ, այնքան բարձրացավ, որ որոշեց Սանամ տատին ապացուցել, թե ինչ տղա է ինքը։

Իսկ ինչո՞վ, ինչպե՞ս։

4.

Սանամ տատը հավերին կուտ տալուց հետո, վառեց թոնիրը։ Խմորն արդեն թթվել էր, փքվել, բերնեբերան լցրել տաշտը։

Ամառ է. ազգ-հարևան դաշտ են գնացել։ Սանամ տատն ինքը պիտի հաց գունդ կպի, հաց գրտնակի, հաց թխի։ Այ թե օգնող լիներ հա։ Սանամ

տատը դես նայեց, դեն նայեց ու ձայն տվեց.
— Վազրի՜կ, Վազրի՜կ...
Պատասխան չկա։
Իսկ Վազրիկը կտուրին լսում էր տատի մենախոսությունը և դիտմամբ ձայն չէր հանում։ Սանամ տատը, հուսահատ, քայլերն ուղղեց դեպի ներքնահարկը, ուր դրված էր խմորի տաշտը։
Այդ պահին կտուրից լսվեց շան հաչոց։ Սանամ տատը ձեռքը հովանի արած՝ նայեց վերև։ Վազրիկն առաջ եկավ, ծիծաղելով ու ընդօրինակելով տատին, կանչեց.
— Վազ-րի՜կ, ա՛յ Վազ-րի՜կ... Չկա։ Առանց Վազրիկ մնամ։
Ու երկուսն էլ միասին ծիծաղեցին ի նշան հաշտության։
— Ցա՛ծ իջիր, արևի՜դ մեռնեմ։ Մենակ մոլորվել էի։
Վազրիկը հոնքերը կիտեց, քրթմնջաց, բայց վերջը լղճաց տատին ու ցած իջավ։
Երկրորդ «բացին», այսինքն թոնիրը թեժացնելիս, տատը գնաց գնդելու։ Վազրիկն օգտվեց առիթից և կատվի ճարպկությամբ թռավ կտուրը։ Այնտեղ ամառվա տաք արևի տակ թրծվում էին կավե կաղապարները։ Դա հատուկ թոնրակավ էր, որ Վազրիկը հունցել էր կրունկներով, հետո լցրել տատի հին կոշիկների մեջ, տվել դրանց ձևը և դրել արևին։ Իսկ հիմա պետք էր թրծել։ Լավ ժամանակն է. թոնիրը՝ թեժ, հացի օր։
Վազրիկը ափալ-թափալ կաղապարները բերեց ու գցեց թոնիրը։
Բի՜չ անց, եկավ Սանամ տատը.
— Դե, բե՛ր տեսնեմ, փահլա՜ն ջան, մինչև աչքս բացեմ-խփեմ, չարդախից մի խուրձ աբբատ գցես։
— Տատի՛, ես քանի՞ անուն ունեմ, հաշված կա՞ս։
— Հաշվելու ժամանակ չի, բլբո՛ւլ ջան, թող։
Երբ Վազրիկը կտուրից իջավ, տեսավ տատը կռացել է թոնրին և աշխատում է ինչ-որ բան հանել մոխրի միջից։
— Տատի՛, էն կոշերը հիմա այրվել քարացել են։
— Հա, բա՜, քարացել են.—հաստատեց Սանամ տատը։ Ու նորից շամփուրով փորձեց հանել դըրանք։
Վազրիկը չկարողացավ իրեն զսպել։
— Ի՞նչ ես կչկչում, ի՞նչ,—բարկացավ տատը և շամփուրը նիզակի պես ճոճեց թոռան վրա։
Վազրիկը ետ ցատկեց ու քրքջալով ասաց.
— Տատի՛, բա դա խմո՞ր է։ Կա՛վ է, կա՛վ։ Իմ կաղապարներն են։ Գցել եմ, որ թրծվեն։
— Ցա՜հ, ի՞նչ կաղապար,—մեղմացավ տատը,—բա կավե կաղապա՞ր կլինի։ Պետք էր, կասեիր՝ կառնեի փայտից, իսկականը։ Բա Սանամ տատդ մեռա՞ծ է, որ դու զուրկ մնաս։
— Չէ՛, ես կավից եմ ուզում...—կմկմաց Վազրիկը, զգալով, որ չափից ավել բացվեց։ Չէ՞ որ ինքը որոշել էր թաքուն պահել իր մտադրությունը։ Բայց ոչինչ. տատը գլխի չընկավ, թե ինչի համար է։ Այդքանն էլ բավական է։
Սանամ տատը հացից հետո գնաց ֆերմա, ուր անհամբեր սպասում էին նրա «կաքավները», «բլբուլները», «ազիզները», ինչպես անվանում էր ինքը իր հավերին, աքլորներին ու վառեկներին

5.

Մինչ այդ, Վազրիկն արդեն ամեն ինչով նախապատրաստվել էր։ Ու հիմա, երբ տատը աշխատանքի է գնացել, Վազրիկը ինչ ունեի-չունեի հավաքեց բերեց հացատունը, նստեց լուսամուտի մոտ և գործի անցավ։



Տատի գոգնոցը փռեց ծնկներին ու ինքն իրեն ժպտալով բրթմնջաց.

— Դե, քե՛զ տեսնեմ, Վազրի՛կ ջան, խայտառակ չլինես, հա՜…

Մինչև իրիկուն Վազրիկը կարեց երեսները և քաշեց կաղապարներին։

Երբ տատը տուն եկավ, նա արդեն հոգնած պառկել էր թախտին ու գիրք էր կարդում։ Իրիկնահացն այսօր մի տեսակ քաղցր թվաց. նրանի՞ց էր արդյոք, որ լավ չարչարվել, սովածացել էր, թե՞ այն բանից, որ վաստակած էր զգում իրեն.



առաջին լուրջ վաստակը, որով ուզում էր զարմացնել չմահավան տատին և նրանց, ովքեր իրեն համարում էին կապը կտրած, անպետք տղա։

Մյուս երկու օրն էլ տակերը կարեց, կրունկներին մեխեր շարեց։ Հետո խարտոցով հղկեց տակերը, ներկեց, փայլեցրեց ու հավաքեց գործիքները։

Այժմ անհամբեր սպասում էր տատի գալուն։ Վերջապես տատը եկավ, ընթրեցին, բայց Վազրիկը ոչ մի խոսք չասաց այդ մասին։ Չգիտեր ինչպես սկսեր, որ ազդեցիկ լիներ։ Եվ ահա վերջապես գտավ հնարը։ Երբ տատը հոգնած հենվեց բարձին, նա մտավ մյուս սենյակը, վերցրեց նոր չուստերը և հետևը թաքցրած՝ բերեց։ Տատի հնամաշ չուստերը հրեց թախտի տակ, դրանց տեղում դնելով նոր կարածը։

Սանամ տատը աչքերը կիսախուփ նիրհում էր։

— Վազի՛ր ջան, բեր մի բան կարդա՝ ականջ անեմ։

— Տատի՜, ա՛յ տատի, արի քեզ մի հարց տամ։

— Ասա՛, Վազի՛ր ջան, իմ օր ու արև, իմ գլխի տեր։

— Դու ինձ հա ասում ես՝ Վազիր։ Ասենք թե հանկարծ, ինչ որ հեքիաթում, դարձա վազիր, դու ի՞նչ կուզես։

— Տատին մեռնի խելքիդ, ի՞նչ կուզեմ։ Քո առողջությունը կուզեմ, ուրիշ էլ ի՞նչ։

— Չէ, չէ՛, չհասկացար։ Ի՞նչ պաշտոն կուզես, որ քեզ տամ։

— Ե՞ս,—մի պահ կարկամեց տատիկը մտածելով,—ես կուզեմ էլի իմ հավերը պահեմ։

— Յա՜, հենց ա՞յդ։

— Բա ի՞նչ։ Ամեն հավք իր թևով է թռչում։ Մարդս որ կա, ճիշտ է, աչքածակ է։ Բայց էս աշխարհում մի պալատ չէ, մի հազարն էլ չէր շինվի, թե որ ամենքը խանում-խաթուն դառնային։ Համ էլ՝ ամենից համով հացը արդար քրտինքով վաստակածն է։ Դու լսած կա՞ս «Շահզադեի Արասին»։ Չէ՞, դե լսի՝ պատմեմ։

Եվ տատը պատմում է այն տղայի մասին, որը ծնողների վաստակը չի գնահատում, բայց երբ նրա վաստակած փողը հոր ձեռքից ընկնում է թոնրի կրակի մեջ, նա նետվում է, որ կրակից հանի, որովհետև դրա համար քրտինք էր թափել։

Վազրիկը լսում է ու մտածում. ասես իր մասին է հորինված այդ հեքիաթը։ Եթե որևէ մեկը հիմա նրա կարած չուստերը գցեր թոնի՞րը։ Ի՞նչ կաներ ինքը։ Կծվատեր աքլորի պես։

Վերջապես տատը վեր կացավ և ուզեց չուստերը գցի ոտքերը։ Ոտքերով շոշափեց կիսախավարում, իր չուստերի տեղ ոտքերին դիպան ինչ-որ արտասովոր կոշիկներ։ Կռացավ, վերցրեց։

— Յա՛, ա՛յ բալա, էս ի՞նչ բան է, ո՞ւմ կոշիկներն են էստեղ վեր ընկած։

Վազրիկը խորհրդավոր ժպտում է ու լռում։

Սանամ տատը գնում է տակը, վրան, գլուխ չի հանում։

—Տատի՛, բռնի՛ր ինձ։ Ես եմ կարել, քեզ համար եմ կարել։ Հավանո՞ւմ ես։

— Յա՜,—ծոր ավեց Սանամ տատը,—մատներիդ մեռնեմ, մատներիդ,—ասաց ու փաթեց լույսը։

Ապա նորից գնաց չաների տակն ու վրան, հետո դրեց թախտին ու գրկելով թոռանը, պինդ-պինդ համբուրեց։

Վազրիկը ցնծության մեջ էր։

6.

Առաջվա նման, Սանամ տատը աշխատանքի գնալիս իր հին չաներն էր հագնում, իսկ ջրի, գրասենյակ կամ բարեկամների տուն գնալիս, հագնում էր թոռան կարածը։ Դրանք թեև այնքան էլ կատարյալ չէին, բայց երբ այդ մասին խոսք էր լինում, Սանամ տատը պարծանքով ասում էր.

— Վազրիկիս ձեռքի գործն է։ Դպրոցումն է սովորել։ Հազարփեշակ է, հո սրա չի։ Մատների՜ն մատաղ...

Մի անգամ

ԴԵՊՔԵՐ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

Մի անգամ

ԴԵՊՔԵՐ ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ԿՅԱՆՔԻՑ

* * *

Մի անգամ աշխարհահռչակ երգիչ Հենրիկո Կարուզոն ավտոմեքենայով անցնում էր Նյու-Յորքի նահանգով։ Ճանապարհին ավտոմեքենան փչացավ։ Մինչև մեքենան կվերանորոգեին, նա հյուր եղավ մի ֆերմերի տանը։ Վերջինս հարցրեց նրա անունը։

— Կարուզո,—եղավ պատասխանը։

Ֆերմերը վեր թռավ տեղից, բռնեց նրա ձեռքը և բացականչեց։

— Կարո՞ղ էի երևակայել, որ այս աղքատիկ խրճիթում կտեսնեմ այնպիսի մարդու, ինչպիսին դուք եք, խոշորագույն ճանապարհորդ Ռոբինզոն Կրուզո։

* * *

Մարկ Տվենը դասախոսություն կարդալու նպատակով գնում է մի քաղաք։ Նախքան ճաշելը նա մտնում է վարսավիրանոց՝ սափրվելու.

— Դուք օտարերկրացի՞ եք,—հարցնում է վարսավիրը։

— Այո,—պատասխանում է Մարկ Տվենը,—առաջին անգամ եմ այստեղ լինում։

— Դուք լավ ժամանակ եք ընտրել այստեղ գալու,—շարունակում է վարսավիրը,—Մարկ Տվենը այսօր պետք է դասախոսություն կարդա։ Դուք անշուշտ կգնաք։

— Օ՜, ես էլ եմ այդպես կարծում։

— Դուք տոմս գնե՞լ եք։

— Դեռ ոչ։

— Բայց բոլոր տոմսերը վաճառված են. դուք պետք է ոտքի վրա կանգնեք։

— Ես միշտ ոտքի վրա եմ լինում, երբ այդ մարդն է դասախոսում,— պատասխանում է Մարկ Տվենը։

* * *

Ջեկ Լոնդոնը ուշացրել էր իր պատմվածքը հանձնելու Նյու-Յորքի ամսագրերից մեկին։

Խմբագիրը պատմվածքը ձեռք բերելու համար երկար ջանք թափելուց հետո, վերջապես գնում է հյուրանոց և Ջ. Լոնդոնին ուղարկում է հետևյալ գրությունը.

«Թանկագին Ջեկ Լոնդոն, եթե ես 24 ժամվա մեջ պատմվածքը չստանամ, կբարձրանամ ձեր սենյակը և ոտքերիս տակ կճմլեմ ձեզ։ Իմացեք, որ ես միշտ իմ խոստումները կատարում եմ»։

Ջ. Լոնդոնը պատասխանում է.

«Թանկագին Դիք, եթե ես էլ իմ բոլոր գործերը ոտքերով կատարեի, ես նույնպես իմ խոստումը կատարած կլինեի»։

## ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ



Երեսուն տարի առաջ էր...

Քաղաքի նորակառույցներից մեկի վրա աշխատող երիտասարդ բանվոր Վիկտորը գրեց «Փոքրիկ կառուցողները» բանաստեղծությունը:

Եղիշե Չարենցը հավանեց այդ բանաստեղծությունը և խորհուրդ տվեց հանձնել այն տպագրության:

Անցան տարիներ. այդ ժամանակամիջոցում Վիկտոր Վարդանյանը հրատարակեց մանկական բանաստեղծությունների մոտ երկու տասնյակ ժողովածու:

Մանուկները սիրով երգում և արտասանում են նրա բանաստեղծությունները, տիկնիկային թատրոնում հաճույքով դիտում նրա մանկական պիեսների բեմադրությունները:

Այս տարվա դեկտեմբերին լրացավ բանաստեղծ Վիկտոր Վարդանյանի ծննդյան հիսուն տարին:

# ԱՆՈՒՇ ԼԻՆԻ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Պապս ծառ էր տնկում բակում,
Տատս բակում բուրդ էր թակում.
Հայրս բահին կոթ էր սարքում,
Մայրս նստած կար էր անում,
Իսկ եղբայրս պատ էր շարում:

Սա լավ բան չի, մտածեցի,—
Միայն ե՞ս եմ առանց գործի,
Ինչքա՞ն խաղամ ու թռչկոտեմ
Մեկնումեկին գոնե օգնեմ.
Եվ դիմեցի.— Հը՛, օգնե՞մ ձեզ.
Ինձ ասացին. Դու դեռ փոքր ես...

Մի պահ հետո ծարավեցին.
—Մանա՛ս, Մանա՛ս,—ինձ կանչեցին.—
Էլ չենք կարող մենք համբերել.
Դու կարո՞ղ ես պաղ ջուր բերել...
Ճիշտն ասած, շատ ուրախացա,
Խաղը թողած շուտ ետ դարձա,
Թեյնիկն առա վազ տվեցի
Աղբյուրից պաղ ջուր բերեցի:

Պապս խմեց, ասաց. Մանաս,
Կաղնու նման հաստատ մնաս:

Տատս խմեց, ասաց.—Բալաս,
Ջրից երկար կյանք ունենաս:
Հայրս խմեց, ասաց. Տղաս,
Կյանքում երբեք չծուլանաս:

Մայրս՝ խմեց, ասաց.—Բար տաս,
Ապրե , ծաղկես ու զորանաս:
Իսկ եղբայրս ասաց այսպես.
— Կանաչ մնաս եղևնու պես:
Ով ջուր խմեց բաժակով լի,
Ես ասացի. -Անուշ լինի...



# ՄԱՅՐԻԿԻ ՕԳՆԱԿԱՆԸ

Ճերմակ գոգնոցն
Իմ հագին,
Ես օգնում եմ
Մայրիկին:
Խոհանոցում
Ա՛յ, տաք-տաք

Պատրաստում ենք
Կարկանդակ:
Հո ես պարապ
Չեմ նստում,
Հա՛ վերցնում եմ
Եվ ուտում...



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Ձմեռ տատը — Վ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ . . . . . . . .
2. Ձմեռնամուտ — Դ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ . . . . . . . . 2
3. Էքսկավատորը — Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ . . . . . . . . 2
4. Ձմռան երգը — Ս. ԽԱՐԱԶՅԱՆ . . . . . . . . . . . . 4
5. Անհետացած տառերը — Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ . . . . . . 5
6. Նոր տարվա նախօրյակին — ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . . . . . . . . . 9
7. ԼԵՎ ՏՈԼՍՏՈՅ . . . . . 10
8. Թռիչք
9. Խնձորենի — Լ. ՏՈԼՍՏՈՅ . . 12
10 Աֆրիկայի տարին . . . 14
11. Պատրաստիր ինքդ · ներդիր
12 Թե ինչու ամեն մարդ ունի իմաստության հատիկ . . . 19
13. Սարդը, նապաստակն ու քարը . . . . . . . . . 20
14. Մեծ լիճը . . . . . . . . . 20
15 Քիչ սպասիր — Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . . . . . 21
16. Գիտե՞ք ինչու — Մ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ . . . . . . . . 21
17. Բակում.
18. Խրիպանկա.
19. Թռչնիկ.
20. Առյուծ
21. Կաթիլ — Ի. ՍՆԵԳՈՎԱ . . 22
22. «Պիոներական երկամյակ» — Այսպես սկսեցին երբանք — Ռ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ . . . . . . . 24
23. Սանամ տատի չստերը — Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . .
24. Դեպքեր նշանավոր մարդկանց կյանքից . . . . . . 30
25. Անուշ լինի.
26. Մայրիկի օգնականը — Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ . . . . . . . 31
27. Ժամանց

Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



## «ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԱՂՅՈՒՍԱԿ»

*Անցած տարի էր։ Երևանի դպրոցներից մեկում Նոր տարվա հանդեսին մրցանակներ էին սահմանված լավ երգողների, պարողների, արտասանողների, նվագողների և զվարճալի խաղեր կազմակերպողների համար։*

*Վերջում Ձմեռ պապը պետք է հաղթողներին բաժաներ շահած մրցանակները։ Նա նվերները դասավորեց հինգ սեղանի վրա։ Դուք տեսնում եք միայն չորսը, իսկ հինգերորդ սեղանը գտնվում է կրպակի հետևի մասում։*

*— Կարող եք ինձ չհայտնել, թե ով ինչ է շահել,— երեխաներին ասաց Ձմեռ պապը,— ինքս կիմանամ։ Հաղթողները թող մեկ առ մեկ մոտենան և ասեն, թե իրենց շահած մրցանակներից որ սեղանների վրա են դրված։*

*Երեխաները ուշադիր զննեցին սեղանները և մոտեցան։*

*— Իմ մրցանակը գտնվում է առաջին, երկրորդ և չորրորդ սեղաններին,— ասաց Բաբկենը։*

*— Իմը՝ երկրորդ, չորրորդ և հինգերորդ,— հայտարարեց Հրաչիկը։*

*— Իսկ իմը՝ միայն առաջին և երրորդ սեղաններին,— ասաց Նվարդը։*

*Ձմեռ պապը նայեց կրպակի աջ ու ձախ կողմերում փակցված «Կախարդական աղյուսակին» և ասաց.*



Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—11—83, 2—39—06։

ՎՖ 06701. Պատվեր 1693։ Տպաքանակ՝ 6500։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 9 XII 1960 թ.։ ՀՍՍՀ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ., նոր գինը 20 կ.։



— Ամեն ինչ պարզ է։ Բարեկեն, վերցրու քո շախմատը, Հրաչիկ, դու էլ գնդակ ես շահել, իսկ Նվարդին ինքս կտամ այս գեղեցիկ տիկնիկը։

— Ճիշտ է,— զարմացան բոլորը,— բայց ինչպե՞ս իմացաք։

— Դա իմ գաղտնիքն է,— ժպտաց Ձմեռ պապը։ — Ինքներդ գուշակեցեք։

Երեխաները շատ մտածեցին, բայց չկարողացան իմանալ։

Ձմեռ պապը որոշել է այս տարի էլ նույն «կախարդական աղյուսակի» օգնությամբ բաժանել մրցանակները։

Երեխաներ, կարո՞ղ եք գտնել գաղտնիքը։

# ՈՎ ՈՐՏԵՂ Է ՍՈՎՈՐՈՒՄ

Կարինեն, Անահիտը, Օսանը, Վաղինակը, Կորյունը և Փայլակը ապրում են միևնույն շենքում, բայց սովորում են №№ 17, 22 և 35 դպրոցներում։

Որոշեցեք, թե նրանցից ով որ դպրոցում է սովորում, եթե հայտնի է, որ...

1. 35-րդ դպրոցի երեկույթին հրավիրվածների մեջ էին Անահիտը, Փայլակը և Օսանը։
2. Կորյունը և Փայլակը իրենց դպրոցի վոլեյբոլի թիմի լավագույն խաղացողներն են։
3. 17-րդ և 35-րդ դպրոցների միջև տեղի ունեցած շախմատային տուրնիրում Վաղինակը գրավեց առաջին տեղը։
4. Կորյունն ու Անահիտը սովորում են տարբեր դպրոցներում։
5. Երբ Կարինեն հիվանդացել էր, Վաղինակը այցելում էր նրան և պատմում օրվա դասերը։
6. Առաջ Օսանը սովորում էր 22-րդ դպրոցում, իսկ այժմ Փայլակի հետ հաճախում է նույն դպրոցը։



# ՈՐՍՈՐԴՆԵՐԸ

Երեք որսորդ մի քանի օր շարունակ որս էին անում անտառում։ Վերջին օրը առավոտյան նրանք անհաջողության հանդիպեցին։ Գետակի ծանծաղուտով անցնելիս երկուսը թրջեցին իրենց փամփուշտակալները։ Փամփուշտակալների մի մասը անպետքացավ և դուրս եկավ շարքից։ Երեք ընկերները չոր մնացած փամփուշտները հավասարապես բաժանեցին իրար մեջ։

Երբ յուրաքանչյուրը չորս անգամ կրակեց, բոլոր որսորդների մոտ միասին վերցրած մնաց այնքան փամփուշտ, որքան ունեին [illegible] մեկը իրար մեջ բաժանելուց հետո։

Քանի պիտանի փամփուշտ կար բաժանելուց առաջ։

Նկ. ԿԱՌԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ




գինը 2 ռ. նոր գինը 20 կ.



# ԿՐԻՊՏՈԳՐԱՄ

Բառերի բացատրություն

27. 12. 25,6 — «Կարմեն» օպերայի կոմպոզիտորը։ 23, 28, 20, 7, 22, 16, 28, 5, 12 — Ռուս նշանավոր գրող, որի գրչին են պատկանում այս տողերը. «Մարդու համար ամենաթանկագինը, դա կյանքն է, որը տրվում է մարդուն մի անգամ։ Հարկավոր է այնպես ապրել, որպեսզի աննպատակ ապրած տարիների համար տանջալի ցավ չզգաս»։ 14, 22, 3 — Անտառային միրգ։ 11. 22. 10. 2. 7, 12 — Հայկական ժողովրդական պար։ 26, 12. 11. 22. 7. 24 — Հովհաննես Թումանյանի պատմվածքներից։ 2. 9. 2. 16. 3. 12 — Խաղաղության սիմվոլ։ 15. 2. 1. 27. 2. 7 — Պիոներական հանգստավայր։ 13, 4, 21, 2, 5 — Լարային երաժշտական գործիքների թագուհին։ 19, 2, 1, 2, 8, 12 — Ալ. Շիրվանզադեի ծննդավայրը։ 17, 6, 18,. 29, 22, 3 — Ասիական պետություն, որի պրեմիեր մինիստրը կին է։

Թվերը տառերով ճիշտ փոխարինելուց հետո եղևնու վրայի փոքրիկ շրջանակներում դուք կկարդաք նոր տարվան նվիրված բանաստեղծությունից մի քառյակ։

Կազմեց՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ